# ՄԽԻԹԱՐԱՅ ԱՅՐԻՎԱՆԵՑՒՈՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ.

*Ի լոյս ընծայեաց*

Ք. Պ.

---


Ս. Պետերբուրգ.

Ի տպարանի կայսերական ճեմարանի գիտութեանց.

(Вас. Остр., 9 лин., № 12.)

1867.

Печатано по распоряженію Императорскаго Русскаго Археологическаго Общества.

С. Петербургъ, 2-го Мая 1867 года.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ.

---

Պատմութ՟ ժամանակագրական, արարեալ ՚ի տէր Մխիթար վարդապետէ Այրիվանեցւոյ։

Հայր և Որդի և Հոգի Սուրբ՝ անեղ համագոյ և համազաւր, անսկիզբն և անվախճան, յանէից և յոչ-գոյից արարիչ համայնից երևելեաց և աներևութից, կարգաւորիչ և խնամիչ ամենայն եղելոց, ողորմած և քաղցր առ ամենեսեան. քեզ փառք և աւրհնութիւն, գոհութիւն և բարեբանութիւն յամենայն արարածոց քոց, ՚ի բարութեանց քոց, ՚ի մեծութեանց քոց, յառատութեանց քոց, ՚ի թիւս անթիւս ստեղծուածոց քոց՝ ՚ի հաստս անհաստս մասանց յօրինուածոց քոց, յերկս յաւիտեանս և յանբաւ յաւիտենից։

—

Հոգւովն Աստուծոյ լցեալ և իմաստնացեալ սուրբն Մովսէս, ընդ որում խաւսեցաւ Տէր երեսաւք և ոչ աւրինակաւք՝ ձևացուցանելով առաջի լուսաւոր մտաց նորա զ՚ի սկզբանէ լինելութիւն ամենայն արարածոց իւրոց՝ որպէս երբեմն սքանչելատեսիլ մարգարէին Եզեկիէլի ձևացուցանէր, ձողաչափելով զշինուածս տաճարին և զտեղի փառաց արքունական աթոռոյն և զօծումն սրբալոյս իւղով սքանչելահրաշ քաղաքին, —

այսպէս ըստ այսմ սարսափ և առաջին խորհրդազգած տեսանողին ասէր. «Տեսջիր, որպէս զամենայն ըստ օրինակին, որ ցուցաւ քեզ ՚ի լերինն» — Իսկ նա՝ իմաստնացեալ հոգւովն՝ յապացոյց երկնի և երկրի տպաւորեաց զկազմուած խորանին խորհրդական և քահանայապետական զգեստուն սրբական. և այսուքիկ ՚ի տեսիլ աչաց տեսողաց։ Իսկ ՚ի լուսաւորութիւն մտաց բանականաց գրոշմեաց գրով զպատմութիւնս արարածոց, զորս եւեթ իմանալի աչաւք, բայց հակիրճ և համառօտ և ոչ բազմաբան։ Այլ և բազում զերծեալ փրթաւ ՚ի մտաց նորա՝ որպէս վասն հրեշտակաց և ջրոց և վերին Երուսաղեմի ինչ ոչ ճառեաց, և զտնկումն դրախտին ոչ ՚ի կարգադրութիւն աւուրցն յայտ արար, այլ յետոյ իմն պատմեաց։ Այսպէս և զպատմութիւն դարուցն առաջնոց և անցիցն անցելոց հարևանցի իմն պատմէ, զբուն ազգին զոծ կարգաւ բերելով և զայլ երկուց որդւոցն Նոյի սկսանելով՝ եթող անկատար։

Իսկ ՚ի կազմել զխորանն կարաւտացան ճարտարաց ևս և նիւթից. ուստի Հոգին Սուրբ ելից զԲեսեղիէլ և զՈղիաբ յարուեստս նկարակերտութեան, և զժողովուրդն յորդորեաց ՚ի պատրաստութիւն տարազու նիւթոյն։ Նոյն Հոգին որ՝ աստուած կատարեալ, կացցէ և այժմ ընդ աջմէ գործակից գործոյս և կատարիչ կամաց խորհրդոյս՝ լոյս արփիափայլ ծագելով մտացս մթացելոյ. ճարտարապետն աշխարհաց ճարտարացուսցէ զհոգի իմ հրաշալի հողմովն, որ ելից զվերնատունն, և հրահոսան ճառագայթիւք ճարտարացուսցէ զտեսութիւն հոգւոյ իմոյ՝ առնելով զիս արուեստագէտ զատաւքար՝ որպէս և անդ զԲեսեղիէլ, այլև դպիր բազմիմաստ իբրև զԵզր Սաղաթիէլ — կրկնադիր դպիր աւրինաց և մարգարէից տալով նիւթ իմաստից

ի սատարութիւն ինձ զժամանակագիր մատեանս առաջնոց՝ և յօրինել սափերս որբականս ի փառս Սրբոյն Այ։

Արդ թէպէտ յօժարութիւն սրտիս ստիպէ զիս ի մի բովանդակել զամենայն պատմութիւնս և զպատճառս իւրեանց, սակայն կասեալ գտանիմ՝ յանկարծութիւնս իմ հայելով, ևս և յանչափութիւն գրելոյն։ Զի թէ որ ընդ Աստուծոյ խաւսէր՝ Մովսէս, զբազում պատմութեամբք զանց առնէր. և որ սիրտ և կամք Տեառն անուանէր՝ Դաւիթ, զինքն և զամենայն մարդ սուտ ասէր. և աստուածիմաստ Սողոմոն, որ հինգ հազար առակս խաւսէր, զոր ինչ առատն կայր ոչ նշմարէր. և Աղէքսանդր, որ իմաստութեամբ և արիութեամբ աշխարհի տիրէր՝ ի կնոջէ միջէ ի կալանս ըմբռնէր. և Արիստոտէլ, որ ի ներշրջականսն ճեմէր՝ յԵւրիպոսէ յաղթեալ գտանէր. և Պապէաս Պտղոմեանց, որ զբնակութիւնս մարդկան չափէր՝ զբազում տեղօք զանց առնէր. և Պաւղոս, որ Քրիստոսիւն խաւսէր՝ զանձն իւր ոչ իմանայր և փոքր ի շատէ մարգարէանայր. — ապա զի՞նչ պարտ է ասել յաղագս մեզուք մակարդեալ մտացս անկարութեան, որ ոչ ի տեսականսն տարժանեցայ և ոչ զգործնականսն գործածիրեցի. այլ փոխանակ փութոյ փառաց նորա փուշս դիզեցի լուցկի լման գեհենի։ Իսկ զայս իրակերտութիւնս, զոր սկսայ յուսով Այ՝ ոչ յաղագս յիշատակի ինչ բարեաց յատուածայինսն կամ ի մարդկայինսն, այլ զմիտս իմ մարդելով ի գործս և ի տեսութիւնս զրուցական վերծանութեանց, թերևս փոքր ինչ արգելցի ի ցնդմանէ երկրաքարշական ցնորմանց։ — Արդ օ՜ն առեալ յօգնականութիւն ողւոյս զօժանդակութիւն Հոգւոյն Սբյ և զարեխոսութիւն սուրբ Աստուածածնին և

զբարեխօսութիւն ամենայն սրբոց՝ սկսեալ յԱստուծոյ, յԱստուած աւարտեցուք զբանս՝ ի փառս և ի գովութիւն Բանին Աստուծոյ։

—

Հայր սուրբ Ա՜ծ.
Թագաւորքն.
Նղենղիարք.
Վեստխորայք.
Կենդխտորայք.

Պրոքսետորայք.
Իսկապխտորայք.
Ստրատորայք.

Նոքողարք.
Պռեկխանունք.
Կիւռսորքն.

Որդի սուրբ Ա՜ծ.
Հայրապետքն.
Կաթուղիկոս.
Արքեպիսկոպոս.
Մետրապոլիտ.

Եպիսկոպոսք.
Քահանայք.
Սարկաւագ.

Դպիր որ է կէս սարկաւագ.
Գրակարդաց.
Սաղմոսասաց.

Հոգի սուրբ Ա՜ծ.
իդ երիցունքն.
Աթոռ՝ Փանուէլ.
Քերոբէք՝ Ագոնիէլ.
Սերոբէք՝ Բարքիէլ.

Տէրութիւնք՝ Պաշուէլ. Պետութի՜՝ Հաւփայէլ.
Զօրութիւնք՝ Ոտիէլ. Հրեշտակապետ՝ Գաբրիէլ.
Իշխանութիւնք՝ Անայէլ. Հրեշտակ՝ Միքայէլ.

(Сюда относится рисунокъ 1-й.)

Հայր և որդի և սուրբ հոգի օրհնեալ, բարձրացեալ և փառաւորեալ յաւիտեանս ամէն

Ա. հրեշտակք՝ փառք ՚ի բարձունս աստուծոյ և յերկիր խաղաղութիւն

Բ. հրեշտակապետք՝ Տէր Տէր մինչև յերբ ոչ ողորմիս քո արարածոց

Գ. պետութիւնք՝ դու ես քահանայ ըստ կարգին Մելքիսեդեկի

Դ. իշխանութիւնք՝ տուաւ քեզ հեթանոսք ՚ի ժառանգութիւն, իշխանութիւն

Ե. զօրութիւնք՝ տէր կարող զօրութեամբ տէր կարող ՚ի պատերազմի

Զ. տէրութիւնք՝ արքայութիւն քո՝ արքայութիւն յաւիտենից

Է. սերովբէք՝ սուրբ, սուրբ, սուրբ՝ տէր զօրութեան՝ լի են երկինք

Ը. քերովբէք՝ օրհնեալ են փառք տեառն ՚ի տեղւոջէ

Թ. աթոռք՝ աթոռ քո Տէր յաւիտեանս

Միքայէլ — թարգմանութիւնս լեզուաց — թարգմանութիւնս լեզուաց

Միքայէլ — ազգս լեզուաց որպէս առաքելոցն — ազգս լեզուաց

Միքայէլ — ընտրութիւն հոգւոյ զլաւն ՚ի վատէն — վարիչս

Ռափայէլ — մարգարէութիւն զուշակս գալոցն — օգնութիւնս

Ուրիէլ — առողջութիւնս զօրութեանց — շնորհս բժշկութեանց

Քերուբ — շնորհս բժշկութեանց — զօրութիւնս

Սաքիաս — հաւատս զլերինս փոխել — վարդապետս

Շմաւէ — բան գիտութեան — մարգարէս

Սահակ և Մեսրոպ — բան իմաստութեան — առաքեալս

Անուանք պարսպաց
վերին Երուսաղէմի.

Ազգք որ գրեալ
կան 'ի նմա.

Անուանք ականց
վակասին.

| | | | |
|---|---|---|---|
| ա. | Յասպիս. | Սարդիոն. | Ռուբէն. |
| բ. | Շափիւղայ. | Տպազիոն. | Շմաւոն. |
| գ. | Գոհագին. | Զմրուխտ. | Ղեւի քահանայ. |
| դ. | Զմրուխտ. | Կայծն. | Յովդայ. |
| ե. | Եզեքնաքար. | Շափիւղայ. | Դան. |
| զ. | Սարդիոն. | Յասպիս. | Նեփթաղիմ. |
| է. | Ոսկեակն. | Լիգիրոն. | Գադ. |
| ը. | Բիւրեղն. | Ական. | Ասէր. |
| թ. | Տպազիոն. | Ամեթիւստոս. | Իսաքար. |
| ժ. | Դահակն. | Ոսկեքար. | Զաբողոն. |
| ժա. | Յակինթն. | Բիւրեղ. | Յովսէփ. |
| ժբ. | Կարկեհան. | Ղունկն. | Բենիամին. |

Եդեմ. Դրախտն. Արեւելք

Փիսոն. Գեհոն. գետք. Տիգրիս. Եփրատէս.

Ծառն
կենաց
Քրիստոս.

Ծառն
գիտուն
բարւոյ
և չարի.

Եմաւոն լեառն. Լուսնեայ լեառն. Կորդուաց լեառն. Կարին Տարօն.

Քրիստոս Աստուած ՚ի վերայ ամենեցուն օրհնեալ յաւիտեան.

Կայանք տրտմութեան հոգւոց մեղաւորաց.

Կայանք բնակութեան հոգւոց արդարոց.

(Сюда относится рисунокъ 2-й.)

զերկրաւ, զծովովն, զօդովք պատեալ զհուրն բարձրակայ հաստատութեան.

դառն դժողքն անօրինաց, որ է խաւարն արտաքին

գեհեանք ամբարշտաց ուր որդն անմահ և հուրն անշէջ.

—

Երեք կամարք երկնից անդադար պարագային՝ շուրջ զչորեքին տարերբքս ՚ի վեր և ՚ի վայր միշտ։ Հուր՝ ջերմ և ցամաք, սուր և անդայտ՝ անաւար։ Օդ՝ խոնաւ և ջերմ, խիտ և շարժուն՝ նաւար։ Ջուր՝ ցուրտ և խոնաւ, բութ և դէճ՝ պարզ։ Երկիր՝ ցուրտ և ցամաք, խիտ և չոր՝ թանձր։

Յերից երկնային կամարացն պարագայից շրջագային և երեքին տարերբքս՝ հուր և աւդ և ջուր, որք առնեն զբան նորա, սպասաւորք և պատկերք անքննութեան և նախախնամութեան Աստուծոյ։ Իսկ երկիր հաստատեալ կայ ՚ի մէջ սոցա՝ վեցեկի գնտիցս ՚ի թուիչս իբր զանդրին ՚ի կրեակ. և բանն Աստուծոյ բարձեալ բերէ զոլորն, երեք իրօք պատկեր ինքեան առնելով զարարածս՝ անժամանակութեամբ, անքաւութեամբ և անտեղութեամբ. բայց քանակաւ և որակաւ և փոփոխմամբն զատչին յարարչէն։ Թէպէտ և բա-

Литогр. Рот. Малышева, В. О. Кад. лин. № 3. С.П.Б.

դմաշխատ եղեալ մարդկայինս բնութիւն իմաստասիրել կամելով յաղագս Աստուծոյ և արարածոցս, սակայն վրիպեալ գտան ՚ի ճշմարիտ գիտութենէ, զոր ինչ ասացին աստուածաբանքն եկեղեցւոյ և ճարտասանքն համալսարանին վասն անեղ և անմահ էութեանն Այ՝ կամ վասն հրեշտակական բարեկարգ յարմարութեանց, կամ յաղագս ընթացից ներշրջական լուսաւորացդ. կամ վասն ծովածին կենդանեացդ, օդականաց և լողականաց. կամ վասն ժ͞բ սեռից հողմոց և բերմանց նոցա, կամ վասն երկրաչափութեան և հրաշիցն, որ ՚ի սմա. կամ վասն բուսոց հողոց և զանազան սերմանց՝ որ ՚ի սմա. կամ վասն բարուց գազանաց և ամենայն չորքոտանեաց և սողնոց, որ ՚ի սմա. կամ վասն կարծրական քարանցն և հրահալական նիւթոց. և գլխովին իսկ յաղագս բնութեան և կազմութեան մարդոյս, և անուանե շրջմանց ժամանակացս և տարափոխ յեղանակացս, ևս և մեկնութիւն գրոց հոգեմատենից. զոր և պարզաբար իսկ ասացից. — զի զոր ինչ ասաց և ասէ մարդ՝ ընդ կարծեօք է և ոչ հաստատութեամբ։ Զայսոցիկ գիտութիւն բացայայտէ Որդին Աստուծոյ ՚ի յարութեան մերում և յարքայութեան իւրում, յորժամ մատուսցէ սիրելեացն իւրոց բաժակուն իմաստութեան և վերահասու առնէ անհասանելեացս այսոցիկ. յորժամ սերմանեալքս ապակութեամբ՝ յառնեմք զօրութեամբ և յառաջին անեղծութիւնն գամք։

## ՅԱՂԱԳՍ ՎԵՑՕՐԵԱՅ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ ԱՍՏՈՒԾՈՅ.

Միաշաբաթ կամ կիւրակէ։ — Ի սկզբանէ արար Աստուած զերկինն հրեղէն և ի նմա հրաշակերտեաց զհրեշտակս տասնեակ դասուք և պատուով զանազանեալս և յանբաւ բիւրս աճեցեալս, զոլով նոցա հուր անկիզելի և լոյս Թափանցական և աւդ առանց սղման. որոց անուն էութեանն և Թիւք որքանութեան և փառք բնութեան և չափք իմաստութեան անհաս մեան ի մէնջ։ Արար և զլոյն խզուլ ի հրեղէն արփւոյն, այլ և զհուր և զաւդ, զջուր և զերկիր։

Երկուշաբաթի։ — Արար Աստուած յերկրորդ աւուրն զհաստատութիւնն՝ մեղմ և Թաղուն բնութիւն, հինգերորդ էութիւն. և ափաչափ արարեալ զամենայն ջուրս՝ զկէսն կամար յօրինեաց ի վերոյ հաստատութեանն, զի արգելցէ զանշէջ տոչորումն վերին արփւոյն, և զկէսն եԹող ի պէտս աշխարհի։ Ճինեաց և յայսմ աւուր զվերինն Երուսաղէմ՝ ժողովարան անդրանկաց կատարելոց՝ երկոտասան պարսպօք պատեալ և երկոտասան դրամբք միափերԹ մարգարտօք յօրինեալ։ Իսկ զնայք գետոյն և ծառք ի տարին երկոտասան անգամ պտղաբերեալք*)։ — Այս է հեզոյն ժառանգութիւն։

*) Въ Р. прибавлено — երկիր անդնդոյն է.

Երեքշաբաթի: — Արար Աստուած տրոհել ջրոց յերրորդ աւուրն յեզերս աշխարհի և ի գոգս նորա. և սահմանեաց զաղբերս և զգետս մշտադնացս. իսկ զերեսս երկրի կանաչագեղ զարդարեաց բուսովք, որոց սկիզբն բորբոս հողոյն է, և կատարումն՝ սերմն իւր ի նմին: Իսկ զծառս բխեցոյց յերկրէ զանպտուղսն ի բոյնս հաւուց, և զպտղաբերսն՝ ի կեր կենդանեաց. որոց սկիզբն մամուան մտա ի բոյսս, և կատարումն՝ արմաւենիք մերձ ի կենդանիս, յորս է արու և էգ: Տնկեաց զդրախտն յԵդեմ ընդ արեւելս՝ անթառամ պտղովք և անթափ տերևովք, բարձր յերկրէ լուսնին չափ՝ որպէս վերինն Երուսաղէմ ի դրախտէն արեգական չափ:

Չորեքշաբաթի: Իսկ ի չորրորդ աւուրն զլոյսն առաջին անմարմին բաժանեաց յերիս մասունս. — ի սկզբան աւուրն զարեգակն ջերմ և չոր և անուազնաց, իսկ յերեկուն զլուսինն լի անթերի՝ զողար և կակուղ, նաև զջահս աստեղաց ցրուեաց ի վերայ աւդոց ցուրտ բնութեամբ: Կարգեաց զերկոտասան կենդանակերպս անմոլարս՝ օրինակս ապագայ զարուն և զգնացս եօթն մոլորակացն, որք տիպ են այժմեան յաւիտենից. որք և յընթացս իւրեանց ազդումն տան մեաց մարդկան զլինելոյսն: Այսօր սկսաւ ժամանակ արեգակամբ չափիլ: Կէս աշխարհիս անբնակ է մարդկան, զի յոլորտս հիւսիսոյ վեց ամիսն լոյս է և վեցն խաւար. և ի հարաւ հանապազ միաչափ լինի օրն և գիշերն: Եւ երկրաչափքն քառասուն օրագնաց առաջին զայրեցեալ գօտին անշէն, և յայն կոյս մարդաբնակ զկինդրայ աշխարհն. Իսկ այժմ յինն բաժնէ աշխարհիս՝ եօթն քրիստոնեայք են՝ վաթսուն և ութ ազգք, և երկու բաժինն՝ ոչ, չորք ազգ: Լուսինն ի Թափչս երթայ և աստեղքն Թապատալով:

Հինգշաբաթի. — Հրաշագործեաց Աստուած ի հինգերորդ աւուր ի ջրոց բխել զհամար ազգս շնչաւորս. վեցհարիւր ազգք լողան ի ջուրս Թագաւորան իւրեանց լեւիաթանի. և չորք հարիւր (Թեւաբուսեալ) Թռեան յօդս՝ խիլայեալք զանազան փետրովք։

Այսօր եղև անկումն Սատանայի յերկնից։

Ուրբաթ. — Արար Աստուած ի վեցերորդին զգազանս և զանասունս և զսողունս. ստեղծ զԱդամ ձեռօք երեսնամեայ և զԵւայ երեք ժամու յետոյ՝ կամ հինգ *) աւուրբք. եդ և զծառս գեղեցիկս, և զարծիւն և զաքիծն և զեզն առաջի աչաց Ադամայ։ Եդ զմարդն ի դրախտին յետ քառասուն և երկու աւուր և հրամայեաց դնել անուանս ամենայն կենդանեաց և իշխել ամենայնի թագաւորաբար, և չուտել ի ծառոյն գիտութեան բարւոյ և չարի։ Ասացին բնախօսքն, թէ ժիպակ և ծծումբ խառնեալ կայ ի հողն, և յարեգական ջերմութենէ եռացեալ զոյանան ոսկի և արծաթ, պղինձ և երկաթ, կլայեկ և արճիճ, և ամենայն գոյնք ականց. և բոյսք համօրէն։

Շաբաթ։ Յանգեաւ Աստուած յաւուրն եօթներորդի յամենայն գործոց իւրոց և սկսաւ նախախնամել զարարածս իւր. օրհնեաց զօրս զայս և ի սմա սրբոց իւրոց հանգիստ և փառս պատրաստեաց, որ ցուցանէ թէ բնաւին ոչ հանգչի Աստուած ի նախախնամելոյ՝ զի բառնայ զամբարիշտն յերկրէ։

Յայլում ուրբաթու յանցեան նախաստեղծքն և ելին ի դրախտէն և անկան ի Սելան կղզի։ Եւ ընդ բուսանել փշոցն յաղագս անիծիցն՝ բուսան և ծաղիկք ի պէտս բժշկութեան մարդկան։ Իսկ քրով-

*) Въ Моск. изд. Քառասուն և հինգ.

բոցական սուրն՝ որ պահէր զդրախտն, շունթիւքդ է՝ որ անկանի յերկնից յահ և յերկիւղ ամբարշտաց, և ջուրք ջերմկաց յանդնդային հրոյն են, որ ի կատա-րածի տանջէ զմեղաւորս, և փառք սրբոցն՝ ի վերին արփւոյն է: Այսպէս իմն է ժամանակն մարդոյն ի դրախտին լինելոյ, մի՝ զի ընդ անմահս էր վիճա-կեալ, և դարձեալ, զի ոչ է ընդ արեգական, որով չափին ժամանակք: Այլ ըստ (Դ) վիպասանութեան Եւսեբեայ պարտիմք իմանալ, եթէ որչափ Քրիստոս յաշխարհի եկեաց՝ նոյնքան Ադամ ի դրախտին. և որչափ Տէրն ի խաչին՝ նա յետ մեղանացն յամեալ ի դրախտին. և յորում ժամու էջ Տէրն ի գերեզ-մանն՝ նա ընկեցաւ ի դրախտէն յերկիր: Իսկ զեղար-դաւոր և աշխէաւոր սերովբէքն ընդ հեռանալն Ադամայ ի դրախտէն և նոքա վերացան: Եւ զհան-գերձն մաշկեղէն ի յօդոյ արար Աստուած զաղմա-տայի. և բնակեցոյց զԱդամ յանդիման դրախտին, որպէս զյանցաւորս հանեն յեկեղեցւոյ ի ժամ պա-տարագին, զի լացցեն զմեղս իւրեանց: Զայն միան-գամ մեղաւ Ադամ Աստուծոյ, և զայլ ամենայն ժամանակս անմեղ յապաշխարութեան եկաց՝ որպէս Սողոմոն վկայէ:

Յայտնեաց հանդերձեալ եմք հանդիսացուցանել անուամբ զկարգս ընտրելոցն:

ա. Թագաւորք։ Հայր սուրբ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| մլ | Ադամ. | մլ. ջլ. | վմծդ | Թարայ. | հ. մե. |
| նլե | Սէթ. | մե. ջե. | | Աբրահամ. | ճ. ճհե. |
| ոիե | Ենովս. | ճղ. ջե. | վյխդ | Իսահակ. | կ. ճձ. |
| չղե | Կայնան. | ճհ. ջժ. | վնլե | Յակոբ. | ձբ. ճխէ. |
| ջկ | Մաղաղ- | | վնձ | Յուդայ. | խբ. |
| | եէլ. | ճկե. պղե. | վշէթ | Փարէս. | ծթ. |
| ռճիբ | Յարեդ. | ճկբ. ջկբ. | վշղէ | Եսրոն. | ծբ. |
| ռմձէ | Ենովք. | ճկե. յկե. | վոխդ | Արամ. | խէ. |
| ռն | Մաթու- | | վոձթ | Ամինադաբ. | խէ. |
| | սաղայ. | ճկէ. ջկթ. | վջէգ | Նաասոն. | խդ. |
| ռոխ | Ղամէք. | ճձը. չլե. | վջկը | Սաղմոն. | լե. |
| սճխբ | Նոյ. | շ. ջծ. | վփհգ | Բոոս. | ճը. |
| սմխբ | Սէմ. | ճ. ո. | վքհէ | Ովբեթ. | ճա. |
| սյհէ | Արփա- | | տճէ | Յեսսէ. | ճէ. |
| | քսաթ. | ճլե. շլը. | տճկե | Դաւիթ. | ի. |
| սշէ | Կայինան. | ճլ. յղե. | տճկթ | Սողոմոն. | ժը. խ. |
| սոլէ | Սաղայ. | ճլ. շլգ. | տճղ | Ռոբովամ. | ժէ. |
| սչկէ | Եբեր. | ճլդ. շկե. | տճձթ | Աբիայ. | գ. |
| սջա | Փաղեկ. | ճլգ. յլթ. | տմէ | Ասայ. | խա. |
| վլգ | Ռագաւ. | ճլբ. յլթ. | տմծե | Յովսափաթ. | իե. |
| վճժա | Սերուք. | ճլ. յլ. | տմկդ | Յովրամ. | ը. |
| վճձղ | Նաքովր. | հթ. ճղը. | տմկդ | Ոքոզիայ. | ա. |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| տմհա | Գոթողիայ. | է. | տոլդ | Զօրաբաբել. | ծզ. |
| տյժա | Յովաս. | խ. | տոե | Աբիուդ. | խե. |
| տյխ | Ամեսիայ. | իթ. | տշիե | Եղիակիմ. | կ. |
| տյղբ | Ողիայ. | ծբ. | տչձէ | Ազովր. | լթ. |
| տնը | Յովաթամ. | ժզ. | տպլիդ | Սադովկ. | լա. |
| տնիդ | Աքազ. | ժզ. | տպծե | Աքին | լդ. |
| տշը | Եզեկիայ. | իթ. | տպձթ | Եղիուդ | է. |
| տշի | Մանասէ | ծե. | տջժթ | Եղիազար | կբ. |
| տշծա | Ամովս | ժբ. | տջձբ | Մատթան. | լբ. |
| տշծդ | Յովսիայ. | լա. | րէ | Յակովբ. | կ. |
| տշկդ | Յովաքազ. | դ. | րձ | Յովսէփ. | խա. |
| տշկթ | Սեդեկիայ. | ժա. | րձդը | | |
| տշձ | Սաղաթիէլ. | ծդ. | | | |

ը. քահանայք։ Որդի սուրբ.

| | | |
|---|---|---|
| Ադամ. | Եղիազար. | Աբիազար. |
| Աբէլ. | Փենեէզ. | Յովհաննէս. |
| Ենովք. | Յեսու. | Փենեէզ. |
| Նոյ. | Աւագին. | Աբիայ. |
| Աբրահամ. | Ազարիայ. | Բուքի. |
| Սահակ. | Զաբեկ. | Ոզիէլ. |
| Յակովբ. | Մարու. | Զարահիայ. |
| Մելքիսեդեկ. | Ամարիայ. | Ամրայիէլ. |
| Մովսէս. | Աքիտոբել. | Ամարիայ. |
| Ահարոն. | Փենեէզ. | Սամուէլ. |
| Նաբաթ. | Ամարիայ. | Աքիմելէք. |
| Աբիուդ. | Հեղի. | Աբիաթար. |
| Եղիազար. | Ոփնի. | Աքիտովբէլ. |
| Իթամար. | Փենեէզ. | Սադովկ. |
| Փենեէս. | Աքիրովբ. | Ազարիայ. |

Սողոմ.
Մովսիայ.
Եզէկիայ.
Սերիայ.
Ազարիայ.
Սադովկ.
Աքիմելէք.
Սադովկ.
Սամիայ.
Սադուկ.
Ազարիայ.
Ահիմեհէ.
Աքիմելէք.
Խոդայ.
Խադաք.
Յեսու.
Յիսուդաք.
Եղիշէ.
Սողովմ.
Յովիդայ.
Մանասէ.
Ամովս.
Ազարիայ.
Անանիայ.
Շմաւոն.
Մերարի.
Յովսադաք.
Ազարիայ.
Ինադաւ.
Ուրիայ.
Յոհաննէս.
Անդրիմաքոս.

Ոնիայ.
Եզեկիայ.
Շմաւոն.
Ամարիայ. Ազա-
րիա. Ամարիա.
Աքիտոբ.
Սադոկ.
Սողովմ.
Եզեկիայ.
Ազարիայ.
Քեղկի.
Ուրիայ.
Սարրի.
Յովսեդեկ.
Ներիայ.
Սոփոնիայ.
Յեսու.
Յովակիմ.
Եղիշէ.
Յովիդայ.
Յովհաննէս.
Յովիդայ.
Յոհաննէս.
Յովիդայ.
Մանասէ.
Անդրիմաքոս.
Ոնիայ.
Շմաւոն.
Եղիազար.
Մանասէ.
Ոնիայ.
Յովսեպոս.

Շմաւոն.
Հայր Յեսու Սի-
րաքայն.
Մենեղայոս.
Յասոն.
Գադարոս.
Յակիմոս.
Յուդայ Մակաբէ.
Մատաթիայ.
Յ. Մակաբայ.
Յովնադան.
Շմաւոն.
Յոհաննէս.
Հիւրկանոս.
Արիստաբուլոս.
Աղեքսանդրոս.
Յիւրկանոս.
Անանիէլ.
Զաքարիայ.
Շմաւոն.
Աննա.
Կայեափայ.
Յն Քն ի խաչին՝
ճլ երորդ քահանայ.
Յերոդէս աղուէս իդ.
Ագրիպպաս. է.
Ագրիպաս.
Հերովդէս. իդ.
Ատ բարձան Թա-
գաւորք և քա-
հանայք ի հրէ-
ից... ճլ է.

## Դ. մարգարէք․ Հոգի սուրբ.

Ադամ.
Ենովս.
Ենովք.
Ղամէք.
Նոյ.
Աբրահամ.
Յովսէփ.
Յոբ.
Մովսէս.
Մարիամ.
Դեբովրեայ.
Աննայ.
Սամուէլ.
Դաւիթ.
Գադ.
Ասափ.
Նաթան.
Սադովկ.
Աքիայ.
Սամեայ.
Իուդ.
Յովայ.
Յովէլ.
Ազարիայ.
Անանիայ.

Եղիայ.
Եղիսէ.
Որդիք մարգա-
րէիցն՝ որք ի
Բեթէլ և Յե-
րիքով. ճծ ի
յայրին.
Յեսու.
Ոզիէլ.
Միքիայ.
Ազարիայ.
Յովնադաբ.
Անանիայ.
Եսայի.
Խողդեայ կին քա-
հանայի.
Աբրայամունէ.
Երեմիայ.
Բարուք.
Դանիէլ.
Անանիայ.
Ազարիայ.
Միսաէլ.
Եզեկիէլ.
Եզր.

Ովսէէ.
Ամովս.
Միքիայ.
Յովէլ.
Աբդիու.
Յովնան.
Նաւում.
Ամբակում.
Սոփոնիայ.
Անգէայ.
Զաքարիայ.
Մաղաքիայ.
Զաքար.
Յովհաննէս.
Սիմէոն.
Աննայ.
Եղիսաբեթ.
Աստուածածին.
Ագաբոս.
Դ դստերքն Փի-
լիպպոսի.
Անտիոքայ եկեալ
մարգարէքն յԵ-
են. են և այլք
բազումք.

## Դ. Դատաւորք.

| | | |
|---|---|---|
| Յեսու. | Աբիմելէք. Գ. | Սիմագար. Խ. |
| Գոթոնիէլ. Խ. | Թովղայ. ԻԳ. | Հեղի և որդիքն իւր. |
| Աւովդ և Սամէ-գար. Ձ. | Յայիր. ԻԲ. | Սամուէլ մարգա-րէ. ԺԲ. |
| | Յեփթայէ. Զ. | և Սաւուղ. Խ. |
| Դեբովրա և Բա-րակ. Խ. | Եսեբոն. Է. | |
| | Էլոն. Ժ. | |
| Գեդէոն. Խ. Գ. որդի նորա. | Աբդոն. Ը. | |
| | Սամփսոն քաջ. Ի. | |

## Ե. Թագաւորք Իսրայէլի.

| | | |
|---|---|---|
| Յերոբովամ. ԻԲ. | Յէու քաջ. ԻԸ. | Փակէէ. Ի. |
| Նաբադ. Բ. | Յովաքազ. ԺԷ. | Ովսէէ. Թ. Ի ԺԱ |
| Բաասա. ԻԴ. | Յովաս. ԺԶ. | ամին Աքազու բա- |
| Էլա. Բ. | Յերոբովամ. ԽԱ. | րձան Թագաւորքն. |
| Զամբրի. Է աւուրս. | Զաքարիա, Զ ամիս. | Իսրայէլի. |
| Ամրի. ԺԲ. | Սելում. ԽԵ օր. | ԺԹ են սոքա որք |
| Աքաաբ. ԻԲ. | Մանայիմ. Ժ. | տիրեցին ամս ՄԾ. |
| Ոքոզիա. Բ. | Փակէէ. Ժ. | |
| Յովրամ. ԺԲ. | | |

## Զ. Նախահարք Յիսուսի Քրիստոսի ի Ղուկասու աւետարանէն.

| | | |
|---|---|---|
| Աստուած. | Յարեդ. | Արփաքսադ. |
| Ադամ. | Ենովք. | Կայնան. |
| Սէթ. | Մաթուսաղայ. | Սաղայ. |
| Ենովս. | Ղամէք. | Եբեր. |
| Կայնան. | Նոյ. | Փաղէկ |
| Մաղաղիէլ. | Սէմ. | Ռագաւ. |

Սերուք.
Նաքովր.
Թարայ.
Աբրահամ.
Սահակ.
Յակոբ.
Յուդայ.
Փարէս.
Եսրովմ.
Առնեայ.
Ադմեայ.
Արամ.
Ամինադաբ.
Նաասոն.
Սաղմոն.
Բոոս.
Ովբէդ.
Յեսսէ.
Դաւիթ.
Նաթան.
Մատթան.
Մեննայ.

Մեղթայ.
Եղիակիմ.
Յովնամ.
Յովսէփ.
Յուդայ.
Սիմէոն.
Ղեւի.
Մատթէ.
Յովրամ.
Եղիազար.
Յեսու.
Էրայ.
Եղմովդադ.
Կովսամ.
Ադդայ.
Մելքա.
Ներայ.
Սաղաթիէլ.
Զորաբաբէլ.
Ռեսայ.
Յովնամ.
Յովդայ.

Յովսեփ.
Մեննա.
Մատթէ.
Մատթայ.
Նանգէ.
Եսղայ.
Նաւում.
Ամովս.
Մատթա.
Յովսէփ.
Յաննէ.
Մելքայ.
Ղեւի.
Մատաթէ.
Հեղի.
Յակոբ.
Յովսէփ.
Յիսուս Քրիստոս ։
Ութսուն են ազքս ։

Է. իշխանք հայոց.

Յաբեթ.
Գամեր.
Թիրաս.
Թորգոմ.
Հայկ Ա.
Արամանեակ.
Արմայիս.

Ամասիա.
Գեղամ.
Հարմայ.
Արամ.
Արայ.
Անուշաւան.
Պարէտ.

Արբակ.
Զաւէն.
Փառնակ.
Սուր.
Հաւանակ.
Վաշտակ.
Հայկակ.

| | | |
|---|---|---|
| Ամբակ. | Վստամ. | Ընձաք. |
| Առնակ. | Կար. | Գղակ. |
| Շաւաշ. | Գոռակ. | Հորոյ. |
| Նորայր. | Հրանտ. | Զարմայր: |

## Է. Թագաւորք Հայոց.

| | | |
|---|---|---|
| Պերճ, յաւուրս Դաւթի. | Նաբու. | Առաւան. |
| Արբուն. | Փառնաւազ. | Ներսեհ. |
| Բազուկ. | Պաճոյճ. | Արմոգ. |
| Հոյակ. | Կոռնակ. | Բագամ. |
| Յուսակ. | Փաւոս. | Վան. |
| Կայպակ. | Հայկակ. | Վահէ. |
| Սկայորդի. | Երուանդ. | —զսա սպան Աղեքսանդր: |
| Պարոյր՝ Թագաւոր առաջին. | Տիգրան. | Յիսուն եւ ինն են սոքա յազգէն Հայկայ: |
| Հրաչեայ. | Բաբ. | |
| | Տիրան. | |
| | Վահագն. | |

## Թ. Արշակունիք Հայոց.

| | | |
|---|---|---|
| Վաղարշակ՝ իբ. | Երուանդ՝ ի. | սա հաւատայ ի Քրիստոս. |
| Արշակ եղբայրն իւր՝ ժգ. | Արտաշէս՝ խա. | Խոսրով՝ Թ. |
| Արտաշէս՝ իե. | Արտաւազդ՝ ը օր. | Տիրան՝ ժա. |
| Տիգրան՝ լգ. | Տիրան՝ իա. | Արշակ՝ Է. |
| Արտաւազդ՝ ը. | Տիգրան՝ իգ. | պիղծն՝ Պապ՝ է. |
| Արշամ՝ ի. — Քրիստոս ծնաւ. | Վաղարշ՝ իա. | Վարազդատ՝ դ. |
| Աբգար. լը. | Խոսրով՝ խը — զսա սպան Անակ. | Արշակ և Վաղարշակ՝ դ. |
| Սանատրուկ՝ լ. | Անիշխան՝ իէ ամ. | Խոսրով՝ Է. |
| | Տրդատ՝ ծդ. | |

| | | |
|---|---|---|
| Վրամշապուհ իբ. | Սոքա իը են՝ | Բարձան Արշա- |
| Շապուհ՝ ե. | Թագաւորեալք | կունիք: |
| Արտաշիր՝ դ: — | ամ շկէ. | Անիշխան՝ ժդ ամ: |

## Ժ. իշխանք Հայոց.

| | | |
|---|---|---|
| Վարդան քաջ՝ | եղաւ Թուականն | Սմբատ՝ ի: |
| ժէ. | Հայոց: | Ի Նախճուան այ- |
| Անիշխան՝ գ. | Դաւիթ՝ է. | րեցին զամ իշ- |
| Մաղնաս՝ ի. | Թէոդորոս՝ իէ. | խանս: |
| Վահան՝ լա. | Համազասպ՝ է. | Աշոտ Բագրատու- |
| Վարդան՝ դ. | Գրիգոր՝ ժ. | նի՝ ժէ. |
| Պարսիկք՝ գ. | Ներսեհ՝ գ: | Սմբատ՝ իբ: |
| Մժեժ՝ է. — | Աշոտ՝ գ. | Աշոտ՝ ի. |
| Ի սորա աւուրս | Ներսեհ՝ գ. | Սմբատ՝ էբ. |

## Ժա. Թագաւորք Հայոց յազգէն Բագրատունեաց.

| | | |
|---|---|---|
| Աշոտ Թագաւոր՝ իգ. | Աշոտ՝ իէ. | անուն պատուոյ |
| Սմբատ խաչեալ՝ | Սմբատ՝ ժգ. | սոյա: |
| իդ. | Գագիկ՝ իթ. | Բարձան Թագա- |
| Գագիկ արծրու- | Յովհաննէս՝ ի. | ւորք Բագրա- |
| նի՝ է. | Սմբատ՝ ժ. | տունեաց յԱ- |
| Աշոտ երկաթ՝ ը. | Գագիկ՝ բ: — | նւյ և մնացին |
| Աբաս՝ իդ. | Շահնշահ էր | ի Մաձնաբերդ: |

## Ժբ. իշխանք Կիւլիկեցւոց.

| | | |
|---|---|---|
| Փիլարտոս. | Վասիլն յաջողած. | Թորոս. |
| Ռուբէն սանցի. | Թորոս. | Ստեփանէ. |
| Կոստանդին. | Լեոն. | Մլեհ. |

Թորոս. Հեթում՝ ժե։ գաւորք, իշ-
Լեւոն արքայ խա. Միանգամայն 129 խանք և թա-
Փիլիպէն փռանկ՝ ի. իշխանք և թա- գաւորք՝ երեք
Հեթում՝ խթ. գաւորք, իշ- կրկին։
Լեւոն՝ ժը. խանք և թա-

## ժգ. Թագաւորք Երուսաղէմի փռանկք.

Կանդոփրի. Տանկրէ. Ամրի.
Մայմուն. Պաղտոյն. Պաղտոյն։
Այսքան սոքա։

## ժդ. կաթողիկոսք Հայոց.

Յետ երեքհարիւր և եօ-
թն ամաց ծննդեան
Քրիստոսի նստաւ կա-
թողիկոս Լուսաւորիչն
Գրիգորիոս՝ ամս լ.
սուրբն Արիստակէս՝ է.
սուրբն Վրթանէս՝ ժե.
սուրբ Յուսիկ՝ զ.
տէր Փառներսեհ՝ ե.
սուրբ Ներսէս՝ լդ.
տէր Շահակ՝ դ. *)
տէր Զաւէն՝ դ.
տէր Ասպուրակէս՝ ե.
սուրբն Սահակ՝ ծա.
տէր Յովսէփ՝ բ.
տէր Գիւտ՝ ժէ.
տէր Յոհան Մանդակու-
նեցի՝ ժբ.
տէր Բաբկէն՝ ե.
տէր Սամուէլ՝ ե.
տէր Մուշէ՝ ը.
տէր Սահակ՝ ե.
տէր Քրիստափոր՝ ե.
տէր Ղեւոնդ՝ բ.
տէր Ներսէս՝ թ.
տէր Յովհաննէս՝ ժե.
տէր Մովսէս՝ լ։ —
Այս հայ թուականն ե-
դաւ։
Տէր Աբրահամ՝ իգ.

---

*) М. И. Զաւէն.

տէր Յօհան՝ իդ.
տէր Կոմիտաս՝ ը.
տէր Քրիստափոր՝ բ.
տէր Եզր՝ ժ.
տէր Ներսէս՝ ի.
տէր Անաստաս՝ դ.
տէր Իսրայէլ՝ դ.
տէր Սահակ՝ իդ.
տէր Եղիա՝ ժդ.
տէր Յօհան օձնեցի՝ ժա.
տէր Դաւիթ՝ ժդ.
տէր Տրդատ՝ դ.
տէր Սիոն՝ ը.
տէր Եսայի՝ ժդ.
տէր Ստեփաննոս՝ ա.
տէր Յակոբ՝ ա.
տէր Սողոմոն՝ ա.
տէր Գէորգ՝ դ.
տէր Յովսէփ՝ ժա.
տէր Դաւիթ՝ իէ.
տէր Յօհաննէս՝ իբ.
տէր Զաքարիա՝ իբ.
տէր Գէորգ՝ իբ.
տէր Մաշտոց՝ ը ամիս.
տէր Յօհաննէս՝ իը.
տէր Ստեփաննոս՝ ա.
տէր Թէոդորոս՝ ժա.
տիր Եղիսէ՝ է.
տէր Անանիա՝ իբ.
տէր Վահան՝ ա.
տէր Ստեփան՝ բ. —
անիշխան՝ ա.

տէր Խաչիկ՝ իա.
տէր Սարգիս՝ իդ.
տէր Պետրոս՝ լթ։ —
Զսա տարան յոյնք ի
Հոռոմս, և անտի և այսր
անդ են կաթողիկոսքն։
Տէր Խաչիկ՝ բ.
անիշխան՝ է ամ։
տէր Գրիգորիս՝ ժէ.
սա է վկայասէրն ի Ծա-
ծնդաւ ի ձեռն Գագկայ
թագաւորին։
Տէր Բարսեղ՝ լա.
տէր Գրիգոր՝ ծդ.
սա էառ զՀռոմկլայն։
Տէր Ներսէս՝ է.
տէր Գրիգոր՝ իբ.
տէր Գրիգոր՝ ա.
տէր Գրիգոր Ապիրատ՝ է.
տէր Յօհաննէս՝ ժը.
տէր Կոստանդին՝ խդ.
տէր Յակոբ՝ ժթ.
տէր Կոստանդին եօթանա-
սներորդերրորդ կաթողի-
կոս նստի ի չէզ թուին.
իսկ ի չէթ թուին
տէր Ստեփան՝ բ ամ.
առ սովաւ Մսրցին էառ
զՀռոմկլայն և զսա գերի
տարաւ։ Տէր Գրիգոր
անաւարզեցին նստաւ ի
չէր թուին։

## ԺԵ. Իշխանք Վրաց.

Հայկն և եօթն եղբարք իւր.
Քարթլոս.
Բարդոս.
Մովկան.
Լեկան.
Հերոս.
Կովկաս.
Եգրիս.
Մծխիթա.
Ուփլոս.
Ափրիտոն.
Ազոն։
Սա Աղեքսանդրի

## ԺԶ. Թագաւորք Վրաց.

Փառնաւազ՝ առաջին թագաւոր.
Սաւրմակ.
Միրվան.
Փառնաջում.
Արշակ.
Արտակ.
Բարտոմ.
Միրվան.
Արշակ.
Ադրիկ.
Քրիստոս ծնաւ։
Բարտոմ և Քարթամ.
Ազուկ.
Ադմայէլ.
Համազասպ.
Դերուկ.
Փարսման.
Միհրդատ.
Ադամ.
Համազասպ.
Վրդ.
Վաչէ.
Բակուր.
Միհրան. — սա հաւատաց ի Քրիստոս Նունեայ քարոզութեամբ.
Բաքար.
Միրդատ.
Վարազբակուր.
Տրդատ.
Փարսման.
Միրդատ.
Վարչէլ.
Միրդատ.
Վարազբակուր.
Սուրմակ.
Ջուանշէր.
Վախթանկ. — սա զՏփխիս շինեաց։
Դաչէ.
Գուրգասլան.
Փարսման.
Փարսման.
Բակուր.
Քաւրէսպրոս.
Գորամ.
Ստեփանոս.
Ադրներսեհ.
Ստեփանոս.
Արչիլ և Միհր.
Ջուանշեր.
Աշոտ.
Դաւիթ.
Գուրգէն.

| | | |
|---|---|---|
| Լեւոն. | Դաւիթ. | Դաւիթ մեծ. |
| Դեմետրէ. | Գիորգի. | Դեմետրէ ապա_ |
| Թէոդոս. | Թամար. | նեալ: — հէթ իշ- |
| Գիորգին Բագրա_ | Լաշայ. | խանք և թագա_ |
| տունի. | Գիորգի. | ւորք: |
| Բագարատ. | Ռուսուդան. | Դաւիթ. |
| Գիորգի. | Դաւիթ փոքր. | Վախթանգ. |

## ժէ. եպիսկոպոսք Վրաց.

| | | |
|---|---|---|
| Տէր Յոհան. | տէր Պետրոս. | տէր Սիմէոն. |
| տէր Յակոբ. | տէր Սամուէլ. | տէր Սամուէլ. |
| տէր Յոբ. | տէր Թափեջան. | տէր Բարթուղի_ |
| տէր Եղիայ. | տէր Չիմագ. | մէոս. |
| տէր Յունան. | տէր Արսա կաթո_ | տէր Յոհաննէս. |
| տէր Գրիգոր. | ղիկոս. | տէր Բաբելաս. |
| տէր Բարսեղ. | տէր Ելթայ. կիւ_ | տէր Թափոր: |
| տէր Մուշեղ. | րիոն պիղծ. | Զայսչափս գտաք |
| տէր Միքայէլ. | տէր Մակար | յօրինակս: |

## ժը. Թագաւորք Աղուանից.

| | | |
|---|---|---|
| Առան. | Արմայէլ. | Ստեփանոս. |
| Ուռնայր. | Վարդ. | Վարազ Տրդատ. |
| Վաչագան՝ որ յկ̃ե | Վարդան. | Ստեփանոս. |
| եկեղե ցի շինեաց. | Վարդ. | Աբներսեհ. |
| Վաչէ. | Վարազման. | Գրիգոր. |
| Յուաչագան. | Վարազ Գրիգոր. | Սեւադայ. |
| Միհրեւան. | Ջուանշէր քաջ. | Գրիգոր. |
| Սատոյ. | Վարազ Տրդատ. | Սեւադայ. |
| Ասայ. | Վարդան. | Յովհաննէս Թոռ̃: |
| Եսվաղէն. | Ներսեհ. | Զայսչափ գտաք՝ |
| Միհր. | Գագիկ. | երեսուն թուով: |

## ԺԹ. կաթողիկոսք Աղուանից.

Սուրբն Եղիշայ.
սուրբ Գրիգորիս.
տէր Շուփհաղիշայ.
տէր Մատթէոս.
տէր Սահակ.
տէր Մովսէս.
տէր Պանդ.
տէր. Ղազար.
տէր Գրիգորիս.
տէր Զաքարիա.
տէր Դաւիթ.
տէր Յոհան.
տէր Երեմիայ.
տէր Աբաս. սա եղաւ հայ թուական:
տէր Վիրոյ՝ լդ.

տէր Զաքարիա՝ ժե.
տէր Յոհան՝ իե.
տէր Ուխտանէս՝ ժբ.
տէր Եղիազար՝ դ.
տէր Ներսէս՝ ժէ.
տէր Սիմէոն՝ իա.
տէր Միքայէլ՝ լե.
տէր Անաստաս՝ դ.
տէր Յովսէփ՝ ժե.
տէր Դաւիթ՝ գ.
տէր Դաւիթ՝ թ.
տէր Մատթոս.
տէր Մովսէս՝ բ.
տէր Ահարոն՝ բ.
տէր Սողոմոն՝ ա.
տէր Թէոդորոս՝ դ.

տէր Սողոմոն՝ բ.
տէր Յոհաննէս՝ իե.
տէր Մովսէս՝ ա.
տէր Դաւիթ՝ իբ.
տէր Յովսէփ՝ թ.
տէր Սամուէլ՝ ժդ.
տէր Յունան՝ բ.
տէր. Սիմէոն՝ իա.
տէր Դաւիթ՝ է.
տէր Սահակ՝ ժբ.
տէր Գագիկ՝ ժդ.
տէր Դաւիթ՝ գ.
տէր Պետրոս՝ ժբ.
տէր Մովսէս՝ դ:—

Այս չափս գտեալ է յօրինակաց. խև են սոքա:

## Ի. կայսերք որք թագաւորեցին ի ճղդ ոլոմպիադին.

Գայիոս ամս է.
Աւգոստոս՝ ծդ.
Ծնաւ Քրիստոս Յիսուս:
Տիբերիոս՝ իդ.
Գայիոս՝ դ.
Կղօդիոս՝ ժդ.
Ներոն՝ ժդ.
Վեսպասիանոս՝ ժ.

Տիտոս՝ բ.
Դոմետիանոս ժդ.
Ներուա՝ ա.
Տրայիանոս՝ ժթ.
Ադրիանոս՝ իա.
Անտոնինոս՝ իդ.
Աւրելիանոս՝ ժթ.
Կոմոդոս՝ ժդ.

Եղիանոս՝ ա.
Սեւերոս՝ ժբ.
Անտոնինոս՝ է.
Մակրինոս՝ ա.
Անտոնինոս՝ դ.
Աղեքսանդրոս՝ ժդ.
Մաքսիմիանոս՝ դ.
Գորդիանոս դ.
Փիլիպպոս՝ է:—

Հազար ամ Հռո_
մայ։
Դեկոս՝ ա.
Գաղոս՝ բ.
Վաղերիանոս՝ ժե.
Կղօդիոս՝ բ.
Աւրելիանոս՝ զ.
Պրոբոս՝ է.
Կարոս՝ բ.
Դիոկղետիանոս՝ ի.
Կոստանդիանոս՝ լգ.
Կոստանդին՝ իգ.
Յուլիանոս՝ բ.
Յոբիանոս՝ ա.
Վաղէնտիանոս և
Վաղէս՝ ժա.
Գրատիանոս՝ է.
Թէոդոս մեծ՝ ժե.
Արկադէոս և Ո_
նորիոս՝ իգ.
Թէոդոս՝ լգ.
Մարկիանոս՝ ե.
Լեոն՝ ժէ. —
մինչ ի սա կայ_
սերքն Ֆռան_
կք էին. և
յետ սորա Հռո_

ռոմք Թագաւո_
րեցին։
Յուստինիանոս՝ թ.
Յուստինիանոս՝ լթ.
Յուստինիանոս՝ ժգ.
Տիբեր՝ ե.
Մօրիկ՝ ի.
Փոկաս՝ ը.
Հերակլ՝ լա.
Կոստանդին՝ գ.
Կոստանդին՝ իը.
Կոստանդ՝ ժգ.
Յուստինիանոս՝ ժբ.
Լեոն՝ գ.
Ապսիմոս՝ գ.
Յուստինիանէ՝ գ.
Փիլիպպոս՝ գ.
Թէոդոս՝ ա.
Արտեմ՝ ա.
Լեւոն՝ իգ.
Կոստանդին՝ լէ.
Լեոն՝ ե.
Կոստանդին՝ ժ.
Նիկեփոռ՝ թ.
Միքայել՝ գ.
Լեոն՝ ը.
Միքայել՝ թ.

Թէոփիլոս՝ ժե.
Միքայէլ՝ իգ.
Վասիլ՝ իը.
Լեոն՝ իգ.
Ալէքս՝ գ.
Ռոմանոս՝ իը.
Կոստանդին՝ ժգ.
Ռոմանոս՝ գ.
Նիկեփոր՝ է.
Կիւռժան՝ գ.
Վասիլ՝ ծա.
Կոստանդին՝ գ.
Ռոմանոս՝ ե.
Միխայէլ՝ գ.
Կիւռժան՝ բ.
Միխայէլ՝ ժբ.
Թէոդոռն՝ գ.
Դուկիծ՝ ժ.
Դիոժէն՝ ե.
Միխայէլ՝ ը.
Ալէքսան՝ լը.
Կալուժան՝ գ.
Մանիլ՝ լէ.
Ալէքսան՝ իգ.
Փախիկն ալիղծ,
Օսպաշախ գտի,
ղէ Թուով։

իա. Թագաւորք արշակունիք Պարսից.

Արշակ քաջ՝ լա.
Արտաշէս՝ իգ.
Արշակ մեծ՝ ծգ.
Արշական՝ լա.
Արշանակ՝ է.
Արշէս՝ ի.

2*

Արշաւիր՝ խդ։ — Ծնաւ Յիսուս Քրիստոս։
Արտաշէս՝ լե.
Դարեհ՝ է.
Արշական՝ ժէ.
Արտաշէս՝ ի.
Պերոզ՝ լդ.
Վաղարշ՝ ծ.
Արտաւան՝ լա. — Զսա սպան Արտաշիր պարսիկ։

## իե. (Սասանեանք).

Արտաշիր՝ խե.
Շապուհ՝ իդ.
Ներսեհ՝ թ.
Որմիզդ՝ զ.
Շապուհ՝ հբ.
Արտաշիր՝ զ.
Վռամ՝ ժա.
Յազկերտ՝ ժ.
Վռամ՝ իա.
Յազկերտ՝ ժթ.
Պերոզ՝ իէ.
Վաղարշ՝ դ.
Կաւատ՝ է.
Ջամասպ՝ բ.
Կաւատ՝ ժէ.
Խոսրով՝ խը.
Որմիզդ՝ ժբ.
Խոսրով՝ լե.
Կաւատ՝ ա.
Արտաշիր՝ բ.
Խուեմ՝ ա.
Խոսրով՝ ա.
Բոր և Զարմանդուխտ քուերք՝ ա.
Յազկերտ՝ ժբ։ — Զսա սպան Տաճիկն։
Այսքան Պարսից։

## իզ. բռնակալք Տաճկաց.

Մահմատ փեյղամպար սուտ՝ ժբ.
Աւթման՝ ժբ.
Մաւիէ՝ իթ.
Եզիտ՝ գ.
Մրվան՝ ա.
Աբդլմելիք՝ իա.
Վլիթ՝ թ։ — Սա այրեաց զիշխանս Հայոց ի Նախչուան։
Սուլիման՝ բ.
Ումար՝ բ։ — Սա զխաչ և զպատկերս եբարձ։
Շամահեշմին՝ ժթ.
Վլիթ՝ բ.
Մրվան՝ դ.
Ապուլաս՝ գ.
Աբդլա՝ իբ.
Մահադի՝ ժ.
Մուսէ՝ ա.
Ահարոն՝ իգ.
Մահմատ՝ դ.
Մայմուն՝ իա.
Աբուսահակ՝ բ.
Ահարոն՝ դ.
Ջաֆր՝ ժդ.
Մահմատ՝ ա.
Ահմատ՝ դ.
Աբդալայ՝ դ։

Մահմետ՝ լա̄ — Ջուկթուրքմանն աշխարհակալ։
Զսա սպան Սալ- և ինքն նստաւ Տաճիկք նստան։

## իդ. Սալչուկք.

Սալջուք.
Մուսէփայղղոյ.
Դօղլարէկ՝ ժե̄.
Ալփասլան.
Մէլիքշահ.
Մահմուտ սուլ-
տան՝ ժզ̄.
Բէքիարուխ ա̄.
Մահմուտ.
Մահմուտ.
Սանջար սուլտան.
Դաւութ.
Տուղրիլ.
Մասխութ.
Արսլան սուլտան.
Թուղրիլ քաջ.
Ալփասլանն.
Բաքիարուխ.
Սաւփար.
Էլղազի.
Մահմուտ.
Խլիճասլան.
Փահլաւան.
Էլտիկուզ աթաբէկ.
Ղուզլիղ սուլտան.
Ալփասլան.
Տուղրիլ.
Մասութ։ —
Զսա սպան Թա-
թարն և ինքն
բռնակալեաց զա-
շխարհս։

## իե. ղանք Թաթարաց.

Չանկզ ղան.
Հաւքոթայ.
Տոլատայ.
Հլաւուն.
Չաղատայ.
Պատաղայն.
Գիւուկ ղան.
Մանկու ղան.
Արաբուքայ.
Ղուպիլայ։ ծզ̄։

## իզ. Առաքեալք Քսի̄.

Պետրոս.
Պօղոս.
Անդրէաս.
Յոհաննէս.
Յակոբ.
Փիլիպպոս.

Բարդուղիմէոս.
Մատթէոս.
Յակոբոս Ալփեայ.
Շմաւոն.
Յուդայ Յակոբեան.
Թոմաս.
Մատթիայ:

## իէ. Հօ աշակերտք.

Յակոբոս՝ տն եղբայր.
Յովսէփ.
Ադդէ.
Մարկոս.
Ղուկաս.
Կղէոպատրոս.
Ստեփաննոս նախավկայ.
Փիլիպպոս.
Պրոքորոն.
Նիկինաւրս.
Տիմոնայ.
Պարմենայ.
Բառնաբաս.
Մարկոս.
Շուղայ.
Սուղիանոս.
Կրիսկէս.
Պենդոս.
Անդրոնիկոս.
Ամպղիկոս.
Ուրբանոս.
Ստաքոս.
Ապելլէս.
Ապելլոս.
Նարկեսոս.
Իւրոդէոս.
Ադաբոս.
Ռուփոս.
Փիլիգոն.
Երմիս.
Պատրոբաս.
Երմաս.
Ղինոս.
Գայոս.
Փիլոլոգէոս.
Աւղիմպաս.
Իւրովդէոս.
Իասոն.
Սոսիպատրոս.
Տերտիւղոս.
Երաստոս.
Կուարտոս.
Ապողոս.
Կեփաս.
Սոսթենէս.
Տիւքիկոս.
Եպափրոդիտոս.
Կեսար.
Մարկոս.
Յոստոս.
Արտեմոս.
Կղեմոս.
Ոնեսիփորոս.
Տիւքիկոս.
Կարպոս.
Եւիդոս.
Արիստարքոս.
Մկս.
Ղենաս.
Փիլեմոն.
Արիստարքոս.
Պուդէոս.
Տրոփիմոս.
Տիմոթէոս.
Սոսթենէս.
Բարսաբաս.
Պապիաս.
Դիոնէսիոս.
Յեսեթէոս.
Անանիայ.
Աղեքսանդր.
Ռուբայ. Հօ.

## իէ. եպիսկոպոսք Երուսաղեմի.

Յակոբոս.
Շմաւոն.
Յուստոս.
Զակքէ.
Տուբիա.
Բենիամին.
Յոհան.
Մատթէոս.
Փիլիպոս.
Սենեկէս.
Յուստոս.
Ղեւի.
Եփրեմ.
Յովսէփ.
Յուդայ. ամ՟ Հրէայք էին:
Նարկեսոս, հեթանոս.
Մ՟կոս.
Կասիանոս.
Պոպլիոս.

Մաքսիմոս.
Յուլիանոս.
Գայիոս.
Սիմաքոս.
Գայիոս.
Յուլիանոս.
Եպիտոս.
Վաղէս.
Դաքիանոս.
Նարկեսոս.
Դիոս.
Գերմանիոս.
Գորդիոս.
Նարկեսոս.
Աղեքսանդրոս.
Մազաբենոս.
Հիմենոս.
Զաբերդայ.
Հերմոն.
Գապասոս.
Մակար.

Մաքսիմոս.
Կիւրեղ.
Ակակ.
Սեւերիանոս.
Գամասոս.
Կիւրեղ.
Յոհաննէս.
Պրուլիոս.
Պրոմալիս.
Յաբնաղ.
Թէոդոս.
Անաստաս.
Մ՟ետուրի.
Սելուսի.
Վ՟ելլիոս.
Յովանէս.
Պետրոս.
Մակար.
Եւստաթէոս. ծԹ.

## իթ. պատրիարգք Անտիոքայ.

Պետրոս.
Եւոդիոս.
Իգնատիոս.
Իրոն.
Կոռնելիոս.

Ուրիոն.
Թէոփիլէ.
Մաքսիմոս.
Սերապիոն.
Ասկղիպ.

Փիլիպպոս.
Սաբինոս.
Բաբելաս.
Բաւիոս.
Դեմետրիոս.

Պաւղոս Սամոսատացի.
Դոմնոս.
Տիմոթէոս.
Կիւրեղ.
Տարանոս.
Ւիտալիոս.
Փիլոկլիոս.
Եւստաթի.
Յովլիոս.
Սալիս.
Ուբրոս.
Փլաքիոս.
Ստեփաննոս.
Լեոն.
Եւդոքսի.
Մելիտոս.
Թուլոս.
Եւզիանոս.
Փլաբիանոս.
Եւագր.
Պորփիրոս.
Ալեքսանդր.
Յոհան.
Թէոդոս.
Դոմնոս.
Մաքսիմոս.
Ակակ.
Մարտիրի.
Սէ Պետրոս.
Մակեդոն.
Մերուրի.
Յուլիանոս.
Սփին.
Ստեփանէ.
Ռեղոստոս.
Փլաբիէ.
Սարիակէ.
Պօղէ.
Ուբոսիոս.
Եփրեմ.
Դոմնինի.
Սարգիս.
Պօղէ.
Պետրէ.
Յովհաննէ.
Աթանաս.
Գրիգորոս.
Սեւերիանոս.
Յուլիէ.
Եղիայ.
Աթանաս.
Յոհան.
Իսահակ.
Աթանաս.
Գէորգ.
Յովսէփ.
Կիրակոս.
Դիոնէսիոս.
Յոհաննէս.
Իգնատիոս.
Դիոգոս.
Դիոնէսիոս.
Յոհան.
Վասիլոս.
Յոհաննէս.
Յոհան.
Դիոնիսիոս.
Աբրահամ.
Յոհաննէս.
Աթանաս.
Յոհան.
Վասիլոս.
Աբրոն.
Դիոնէսիոս.
Աթանաս.
Յոհան.
Գրիգոր.
Յոհան.
Աթանաս.
Միխէլ. — ճ։

Է. պապքն Հռոմայ.

Պետրոս.
Լինոս.
Անիկլոս.
Կղեմ.
Ուրոսոս.
Ալեքսանդր.

Քսեստոս.
Տեղեսփորոս.
Սեգիանոս.
Փիոս.
Անիկտոս.
Սոտեր.
Եպուրոս.
Կեղեստիոս.
Ելէթերոս.
Բիկտոր.
Ուրբանոս.
Բունդիանոս.
Անտիոոս.
Բաւիանոս.
Կոռնելիոս.
Լուկիոս.
Ստեփանոս.
Քսեստոս.
Դիոնէսիոս.
Դիոնոս.
Ուտոկոս.
Գայիոս.
Մարկիլոս.
Եւսեբի.
Մեղիտոս.
Սիղբեստրոս.
Մարկոս.
Սիլիոս.
Դամասոս.
Անաստաս.
Անոնիոս.
Զոսիմոս.
Կեղեստինոս.
Լեոն.
Գաղոս.
Իլարիոս.
Սիբիլիոս.
Անաստաս.
Սիմաքէ.
Թորոնդ.
Որմիզդ.
Յոհան.
Փելիքս.
Բիքիլոս.
Ագապ.
Սեղպեստրոս.
Պղակիոս.
Մարտինոս. ծէ.

Էա. պատրիարգք Աղէքսանդրի.

Պետրոս.
Մարկոս.
Ակիոս.
Միլոս.
Գարդոնի.
Փրուգի.
Յուստոս.
Ամոն.
Մարկիանոս.
Կաղերոս.
Ագրիպաս.
Յուլիոս.
Դեմետրիոս.
Իգիմոս.
Դիոնէսի.
Մաքսիմոս.
Թէոնաս.
Պետրոս վկայն.
Աքիլաս.
Աղէքսանդր.
Աթանաս.
Պետրոս.
Ղուկիոս.
Տիմոթէոս.
Թէոփիլոս.
Կիւրեղ մեծն.
Դէոսկորոս.
Պրոտէր.
Տիմոթէոս.
Տիմոթ.
Յոհաննէս.
Յոհան.
Դէոսկորոս.
Տիմոթէոս.
Դիոդոս.
Պետրոս.
Գայինէ.
Պօղոս.
Ղուկլիոս.

Ապողինարոս.
Թէոդորէ.
Պետրէ.
Յոհան.
Դամիանէ.
Անաստաս.
Անդրոնիկոս.
Բենիամին.
Կաւրայ.
Ագաթոն.
Յոհան.
Շմաւոն.
Սահակ.
Աղեքսանդր.
Կոզմայ.
Յոհան.
Մարկոս.
Յակոբ։
Շմաւոն.
Յովսէփ. կէ։

## լէ. պատրիարգք Եփեսոսի և Կոստանդնուպօլսոյ.

Անդրէաս առաքեալ.
Ստախիս.
Տիմոթէոս.
Պաւղիկարպոս.
Պաւլին.
Սատաւհէ.
Դիոգին.
Անգատէ.
Ալոթորոս.
Փիլիպոս.
Պողիկարպոս.
Ուղիոս.
Լաւրանդիս.
Ալուքանոս.
Պրոտոնիկոս.
Մարկոս.
Կիւրեղ.
Կոռնելիոս.
Դիգաս.
Դոմետիէ.
Պրոբաս։ —
Փոխեցան ի Կոնստանդնուպօլիս.
Պողոս.
Մակեդոն.
Եւսեբի.
Եւդոքսի.
Եւագր.
Գրիգորիէ ած̃աբան.
Նեքտարիոս.
Ոսկեբերան.
Երեսիոս.
Ատտիկոս.
Սիսինոս.
Նեստոր.
Մաքսիմոս.
Պրոկղ.
Փլաբիոս.
Անատոլ.
Գենադոս.
Ակակիոս.
Փլաբիտոս.
Ուփիմիոս.
Մակեդոն.
Տիմոթ.
Յոհան.
Եպիփան.
Անթիմոս.
Յոհան.
Յոհաննէս.
Կիրիակէ.
Սարգիս.
Մինաս.
Գերմանիոս.
Ստեփաննոս.
Նուգոտոս.
Բուրոս.
Պօղոս. ծդ.

## ԼԶ. գիրք հրէից ծածուկքն.

Ադամայ.
Ենովքայ. Սիբիլայ.
Իժն Նահապետք.
Աղօթք Յովսեփայ.
Վերացումն Մովսեսի։
Էլդադ. Մովդատ
Սողոմոնի սաղմոսքն.
Եղիայի ծածուկքն.
Դանիէլի է տեսիլքն.
Իսկ ըստ Նոցոյս.
Մանկութիւնն Յիսուսի.
Թումայ աւետարան.
Յայտնութիւն Պետրոսի.
Շրջագաց Պօղի.
Կաթուղիկէ թուղթքն բառնաբայ.
Յուդայի և Թովմայի.
Արճն Կղեմայ.
Էնէ որ գէլր ընդունելի է.
Գործքն. կանոնք առաքելոցն.
Յոհաննու տեսիլն.
Խրատ Ածածնին առաքելոցն.
Գիրքն դիոնէսիոսի.
Տիմոթեայ թուղթն.
Գիրքն Կրիապոսի.
Բանքն յուստոսի.
Քարոզ ուղղափառացն.
Թուղթն բառնաբայ.
Զայս ես և Անանէ գրեցաք ի վիմի քաղաքին՝ ուր եկեղեցի օրհնեցաք։

ԼԷ. Կարգադրութիւնք գրոց սրբոց որք ստուգաբանեցան ի Սարկաւագ վարդապետէն և գրեցան յինէն ի տէր Մխիթար Վարդապետէս պատմագրէ ի մին տուփ յաւուրս ԾՀ.

չորք աւետարանիչք.
Յոհաննէս՝ յոյն լեզուաւ.
Մատթէոս՝ եբրայեցերէն.
Մարկոս՝ դաղմատերէն.
Ղուկաս՝ Ասորի.
Գործք Առաքելոցն.
Կաթուղիկէքն.
Յակոբոս տն եղբայր.
Պետրոսի Բ թուղթն.
Գ թուղթն.

Յովհաննու ա.
բ. առ կիւրիա.
գ. առ գայիոս.
Յուդային. ա.
ընդ ուսումնակէրն
և Թադիայ.
Յայտնութիւնն Յովհան-
նու Աւետարանչի.
Էր ընդ եղբարսն.
Առ Թեսաղիկ. ա.
առ նոյին. երկրորդ.
առ կորնթացիսն. ա.
առ նոյն՝ երկրորդն.
առ նոյն՝ երրորդն.
առ հռովմայեցիսն.
առ եբրայեցիսն.
առ տիմոթէոս ա.
առ տիտոս կր՛՛.
առ գաղատացի.
առ եփեսացիս.
առ փիլիմոն.
առ կողոսացիսն.
առ փիլիպեցիսն.
առ տիմոթեայ. բ.
[illegible]
[illegible]
Հռոմայեցոցն.
Կորնթացի ա.
Կորնթացի բ.
Կորնթացի գ.
Գաղատացոցն.
Եփեսացոցն.
Փիլիպեցոցն.
Կողոսացոցն.
Թեսաղոնիկեցոցն ա.
Թեսաղոնիկ բ.
Եբրայեցոցն.
Տիմոթեայ ա.
Տիմոթեայ բ.
Տիտոսին կրետացւոյ.
Փիլիմոնին.
Դաւթի փիլիսոփային Առա-
րձրացուցէքն.
Աղօթամատոյցն Սահակայ
և Մեսրոպայ։
Պատարագն ս՟բ Անդա-
կունեայն.
Ահա կատարեցան Նոր կտա-
կարանքն.
Ե՟ գիրք մովսիսի — Արա-
րածքն, Ելքն, Ղեւտա-
ցւոցն, Թիւքն, երկ-
րորդ Օրէնքն։
Յեսու Նաւէն.
Դատաւորք իսրայէլի.
Հռութ, մովաբայ.
Առաջին Թագաւորութիւն.
Երկրորդ Թագաւորութիւն.
Երրորդ Թագաւորութիւն.
Չորրորդ Թագաւորութիւն.
Առաջին մնացորդք.
Երկրորդ մնացորդք.
Առաջին եզրասն.
Երկրորդ եզրասն.

Նաւագրեայ. Բ. գիրք.
Կրօնաւորայն. ԺԹ.
Ծաւուրքն. Ի.
Սահմանքն դաւթի. ԻԴ.
Պրոկղի՝ եղիադախաւսն.
և ամենլախաւսի լուծմունքն.
Քերական. մժա.
Հերմէան. ա.
Պորփիւրն. ծա.
Արիստոտէլի. Է գիրք.
Ժ ստորոգութիւնքն.
Պերիարմէնիասն. ՀԹ.
Առաքինուէցն. ա.
Աշխարհացն. ա.
Վերլուծուէցն.
Նաւկքն դաւթի.

Պէտաքն մովսիսի.
Յովհաննու մայրավանե-
ցւոյ Է գիրք՝ խրատականքն.
Հաւատոյ արմատն.
Նշանակն.
Անկնութիք Հին և Նոր
կտակարանաց.
Սբ Եփրեմի.
Սբ Եպիփանու.
Ոսկեբերանին.
Կիւրեղ աղեքսանդր.
Ճառասայ հայրապետացն
հանուրց և մանա-
ւորաց։
Ահա կատարեցան Նուրբ
գիրքն։

## ԼԵ. դարագլուխք.

Յարեդ. ռ.
Նոյ այր. ն.
Սերուք. Վ.
Յովբեդ. Տ.
Աքին. Ր.
Քն Ա.Ծ. ԼԴ.
Տէր Յովսէփ. Ց.
Հայ թուն մխթ.
յԱդամայ՝ մինչ դ.
Խ ամն յարեդի ռ ամ.
անտի յԿ ամն Նոյի ռ ամ.
անտի դ դԴ ամն Սերուքայ
ռ ամ.

անտի դ ՀԴ ամն Ովբեթայ
ռ ամ.
անտի յԼԴ ամն Աբինայ
ռ ամ.
Անտի դ մխթ թուն Հայոց
ռ ամ.
Կայենանայ Ծի ամն ոչէ
յայս հաշիւս. զի առա-
ջին կախարդնէ.
Քսի ԼԴ ամն ոչէ յայս
համարքս, զի Ա.Ծէ։

## ԼԴ. Պատմագիրք ի սկզբանէ.

Մովսէս աստուածախօս.
Դաւիթ մարգարէ.
Սողոմոն իմաստուն.
Սամուէլ և Նաթան.
Յեսու.
Եզրիա.
Երեմիա մարգարէ.
Եզր.
Յովսէպոս, որ է կայիափայ
Երոնոս.
Եւսեբի.
Սոկրատ մեծ և փոքր.
Ափրիկանոս.
Անդրէաս իմաստասէր.
Եպիփան Հայրապետ.
Գաստանոս.
Ղերուբնայ.
Մար Աբաս Կատինա.
Ագաթանգեղոս.
Զենոբ ասորի.
Փաւստոս Բիւզանդ.
Ղազար.
Ներսէս.
Սահակ.
Կորիւն Սայակայ.
Խոսրով.
Թոմայ վարդապետ.
Մովսէս Խորենացի.
Ղազար Փարպեցի.
Եղիշէ վարդապետ.

Շապուհ Բագրատունի.
Եւսեբի, որ ի Ջերակլն.
Մովսէս աղուանից.
Գևոնդ երէց.
Ուխտանէս եպիսկոպոս.
Յովհաննէս կաթողիկոս.
Ստեփանոս ասողիկ վարդապետ.
Արիստակէս Լաստիվերտացի.
Յովհաննէս կոզեռն վարդապետ.
Մաթէոս ուռհայեցի վարդապետ.
Անանիա վարդապետ.
Մխիթար քահանայ.
Վահրամ տիգրանակերտացի.
Յոհաննէս Սարկաւագ վարդապետ.
Սամուէլ քահանայ.
Մխիթար Գոշ վարդապետ.
Միխայէլ ասորոց պատրիարք.
Վանական վարդապետ.
Վարդան վարդապետ.
Կիրակոս վարդապետն և ես Մխիթար վարդապետ

Շնորհօք տեառն մերոյ յիսուսի քրիստոսի՝ կրկին ձեռնարկութիւն տէր մխիթար վարդապետի ի փառս աստուծոյ.

Սկիզբն ժամանակաց ելքն Ադամայ և Եւայի ՚ի դրախտէն, որք յետ եօթանասուն ամի սգալոյն իւրեանց՝ ապա անկան ՚ի կարգս ամուսնաց և ծնան զԿային և զԿլիմայ. քոյր նորա. և անտի՝ յետ երեսուն ամաց ծնան զԱբէլ և զԱբելուհի, քանզի Եւայ երկուս երկուս ծնանէր. և ծնաւ հնգետասան ծնունդս: Ադամ փառաւորէր և պատուէր զԱստուած պատարագօք պատուականօք, զոր տեսեալ և ուսեալ զաւակացն զնոյնն առնէին: Կային երկրագործ ՚ի բերոց երկրի զանպիտան մատուցանէր ընծայ Աստուծոյ. իսկ Հաբէլ հովիւ զընտիրսն ՚ի հօտիցն հանէր ողջակէզս առաջի տեառն: Ընկալաւ Աստուած զառատութիւն կամացն Աբելի, և խոտեաց զկարկամ կամս Կայենի. վասն որոյ նախանձեալ սպան զԱբէլ ԼԷ ամեայ, և ինքն անիծաւ յԱստուծոյ անբերութեամբ պտղոց՝ պխակեալ և դողդոջեալ: Ծնաւ Կային զԵնովք. և նա զԳայերիդատ. և նա զՄայիէլ. և նա զՄաթուսաղայ. և նա զԼամէք. և նա զՅովբաղ. որ արար զերգս և զքնարս. և Նոյեմի քոյր նորա զհիւս և զանգղս. և Թովբէլ եղբայր նորա դարբին և պղնձագործ. զի նոքա սկսան քաղաք շինել:

Ադամ և Եւայ՝ լեալ ամաց 230 ծնան զՍէթ որդի 230
մխիթարութեան: Սէթ և Ազովրայ լեալ ամաց 205 ծնան զԵնովս: Սեթայ որդիքն գունագեղք և կարճամէջք և կուռվիզք էին, իսկ Կայենին մուկլերեսք, բայց ճաւճք:

Ենովս և Նոյենայ լեալ ամաց 190, ծնան զԿայնան: 435

Այս Ենովս յուսացաւ կոչել զանուն տեառն՝ և 625
եղև բնական օրինօք առաքինի: Սա էր անուանս մոլորակաց, վասն այսորիկ կոչեցաւ նա Աստուած· և որդիք նորա՝ որդիք Աստուծոյ. իսկ Կայենին՝ դստերք մարդկան: Սա արար գիր առաջին և ուսոյց ծննդոց իւրոյ: Յեղբարց սորա և որդւոց անձինք 500 յիշեցին զկեանս դրախտին և ելին ՚ի լեառն Ահերմոն պահել զկուսութիւն. և այսու պատճառաւ կոչեցան որդիք Աստուծոյ:

Կայինան և Մաղալէթ լեալ ամաց 170 ծնան 795
զՄաղաղիէլ:

Մաղաղիէլ և Դինա լեալ ամաց 165 ծնան 960
զՅարեդ:

Յարեդ և Բառաքայ լեալ ամաց 162 ծնան 1122
զԵնովք: Ի 41 ամին Յարեդի ձանձրացեալ որդիքն Սեթայ իջին ՚ի լեռնէն և եկեալ յազգս իւրեանց խնդրեցին կանայս. և նոքա՝ բարկացեալ իբրև ուխտազանցից Աստուծոյ, ոչ ետուն. իսկ նոցա գնացեալ առ որդիսն Կայենի՝ զնոյն խնդրեցին. և նոքա խնդացեալ առաջի արարին զգեղարչուշ դստերս իւրեանց: Եւ այս եղև պատճառ որդոցն Աստուծոյ խառնելոյ ընդ դստերս մարդկան յետ 500 ամաց կուսութեան:

Յետ հազար ամաց ելիցն Ադամայ ՚ի դրախտէն՝ որդիքն Կայենի եդին իւրեանց թագաւոր զՍամիրաւս անուն, իսկ որդիքն Սեթայ՝ զԱզաւրոս: Սա եգիտ

աշխարհի.

գթիւ կենդանակերպից և մոլորակաց. և ի նմանէ անուանեցաւ քաղդէութիւն, որ է հմայութիւն աստեղաց։ — Արդ թուեն փիլիսոփայքն այսպէս.

Սամիրաւս՝ շարս Ժ.
Աղապարոս՝ շարս Գ.
Ադմեղոն՝ շարս ԺԳ.
Ամմենովն՝ շարս ԺԲ.
Ամեղաղարոս՝ շարս ԺԸ.
Դաւոնոս՝ շարս Ժ.
Ենդրաքոս՝ շարս ԺԸ.
Ամեփսինոս՝ շարս Ժ.
Ոտիարդէս՝ շարս Ը.
Քսիսութրոս՝ շարս ԺԸ.

Այս տասն թագաւորք և շարս 120, որ են 2043 բիւրք ամաց, (զի միշարն 120 ամ համարի)։

Ադաւրոս՝ ամս 98, աւուրս 290.
Աղիփարոս՝ ամս 49, աւուրս 215.
Ալմոն՝ ամս 128, աւուրս 80.
Ամանոն՝ ամս 118, աւուրս 118.
Ամակաւրոս՝ ամս 195.
Դիոնոս հովիւ՝ ամս 98, աւուրս 80.
Տաւրքինոս՝ ամս 175, աւուրս 195.
Մամիփսոս՝ ամս 195, աւուրս 230.
Աւտիարտոս՝ ամս 78.
Քսիսութրոս՝ ամս 175։ —
Այս տասն թագաւորաց 1180 ամք։
Սոքա յառաջ քան զՋրհեղեղն։

Ենովք և Յաղներ լեալ ամաց 165 ծնան զՄաթուսաղայ: Սա արար նշանագիրս կարծօտունս և բազմատարրս և գրեաց զանուանս ամենայն իրաց, զորս եդեալ էր Ադամ: Գրեաց զվարս և զկեանս առաջնոց: Ստացաւ զվարս առաքինիս և զմարգարէութիւն: Գիտաց, թէ երկու անգամ անցանելոց է աշխարհ վասն մեղաց՝ ջրով և հրով. և գրեաց զգիրս իւր ի պղնձի տախտակ և ի թրծեալ աղիւս կաւէ, զոր յետ ջրհեղեղին Արփաքսաթ եգիտ ի Սեգրանի լերին. եւ այնու իմաստասիրեցին Քաղդէացիք և Ասորիք: 1287 P. 1285

Մաթուսաղայ և Յեդնայ լեալ ամաց 165 ծնան զՂամէք: 1454

Ղամէք և Բեդնայ լեալ ամաց 188 ծնան զՆոյ: 1640
— Աստ բազմացան չարիք ի վերայ երկրի՝ ուտել և ըմպել, անխտիր խառնակել, և անողորմ սպանանել. զի հնարեցաւ սատանայ բառնալ զազգս մարդկան յերկրէ: Իսկ խնամքն Աստուծոյ ի բազում խառնիճն զայացոյց զհսկայսն յաղթանդամք և ուժեղք, խուլք և պղծագործք, որք ի հաստկս իւրեանց նայելով անմահս կարծեցին զինքեանս յաւիտեան:

Նոյ և Նոյեմզարայ լեալ ամաց 500 ծնան զՍեմ, 2140 P. 2142
զՔամ և Յաբեթ: Ողորմելով մեղաւորացն եւ Տէր ժամանակ ապաշխարութեան զ100 ամն շինութեան տապանին և վասն անզգայութեանն կարճեաց զ20 ամն: Իսկ պատճառ բազմակեցութեան նախահարցն այս էր. զի փոխանակ գրոյ օրէնք լինիցին զաւակացն և զի բազում որդիս ծնանիցին և լցցի աշխարհ:

Սեմ և Գիզակղերաթ լեալ ամաց 100 ծնան 2240 P. 2242
զԱրփաքսաթ: Յետ ջրհեղեղին եղև որդի Նոյի Մանիտոն անուն. և ետ նմա Նոյ զիմաստունս ծնկացն Ադամայ: Նա եգիտ զհաւահմայութիւնն, և եղև

ամ. աշխարհի. հայր Ռիփրիմանացւոց. իսկ քուէր սորա Սադկոյ ետ (Նոյ) զերջանիկն Արաբիա. և յայնմհետէ կանայք ժառանգեն զնա: Անտի եկն դշխոյն:

Եւ Նոյ Սեմայ զաշխարհն Ասիա, որ առ աստ_ուածային. ՚ի Կարմիր ծովէն և յԱփիւլոյ և ՚ի Պաղեստինոյ և յԱսորւոց մինչև զՊարթևս և զՎրկանս և զծովն Կասբիական, և զամենայն արևելս մինչև ցելս Սինեացւոց: Տայ նմա և զոսկերս նախաստեղծին, որով տեառնէին գլխոյ ՚ի տապանին, որպէս Յովհաննէս զՔրիստոս յորովայնին, և Յունան ՚ի փոր կիտին, և երեք մանկունքն ՚ի հնոցին, և Դանիէլ և Լուսա_ւորիչն ՚ի գբին: ՚Ի բանանալն Քամայ ՚ի վերայ նորա տարեալ թաղէ մարգարէութեամբ զԱդամայն ՚ի Գո_ղգոթայ և զԵւայն ՚ի Բեթղահէմ:

Նոյ ետ Քամայ զԼիբիա, որ ասի Լիբաժին: Զի քան և չորս կերպ է աշխարհս և չորեքտա_սներորդն Լիբիա է, որք են Քուշայիք: Եւ է սահման նորա յՌինոկորուրայ մինչև զԳադիրան, ընդ հարաւ Եգիպտոս և ամենայն Հնդկաստան, և Եթո_վպիայքն մինչև ՚ի լեառն Լուսին, և ծովն Հնդկաց մարգարտաբեր:

Իսկ Յաբեթի ետ զԵւրոպիա, որ ասի մասնեալ. սկսեալ յԱմանոս լեառնէ ընդ հիւսիս՝ զգնացս լերինն Կովկասու, ՚ի Պատամիսս գետոյ մինչև յԵլլիոն, կցորդելով ՚ի սոսա զամենայն արևմուտս և զծովն Ադրիական:

2375 Արփաքսադ և *) Արուխա լեալ ամաց 135 ծնան զԿայինան: Կայինան և Սէքայ լեալ ամաց 120 ծնան զՍաղայ: Կայինան եգիտ զկախարդելն աստեղօք և բազմացոյց զքաղդէութիւն. վասն որոյ որդիք նորա

*) Բ. Ռուճանակ.

Աստուած համարեալ պաշտեցին զնա։ Մովսէս վասն այն չյիշէ զնա, զի սա է սկիզբն կռապաշտութեան, որ ասաց բախտ և ճակատագիր։

Սաղայ և Սերուքայ*) եղեալ ամաց 130 ծնան զԵբեր, յորմէ Եբրայեցիք կոչեցան. և զԵկտան, որ իմացաւ զաղեղն և զուսեր և զամենայն գործիս պատերազմականս. իսկ նեղեալքն ի նոցանէ հնարեցան զգրահս և զսաղաւարտս, զեկրդս և զայրս ինքնափորս։ 2505

Եբեր և Ուզբայ**) եղեալ ամաց 133 ծնան զՓաղեկ։ Փոգովեալ ամենեցուն վիճէին ընդ միմեանս՝ անհաւան եղեալ վիճակացն Նոյի։ Պարծեալ բաժանեցին զերկիր ըստ բազմին և ըստ սակաւուն և անկան ի նզովս Նոյի։ Եւ ապա միաբանեալ խորհեցան ելանել ի դրախտն, և ոչ կարացին վասն շրջապատութեան ծովուն։ Եւ երկուցեալ յԱստուծոյ ի կրկին ջրհեղեղէ՝ ասեն. — „եկայք շինեսցուք աշտարակս և յերկինս ելցուք„։ 2638

Փաղէկ և Օխարայ***) եղեալ ամաց 134 ծնան զՌագաւ։ Եկեալ 72 իշխանք աշխարհի ի դաշտն Քաղանէ և գլխաւոր նոցա՝ Հայկն, Յամուր և Ներբովթ, որ է Բէլ՝ բարձրացուցին զամս 40 ոսկեով և արծաթով և ականբք լուսաւորօք զարդարեցին զպատուհանս նորա, մինչև հասին յօդն որձկուտ և մթծաւս։ Եւ ահա երևեալ հրեշտակն Միքայէլ՝ ասէ հրամանաւ Աստուծոյ. „Դադարեցէք ի գալոյ ատ խս, զի ոչ կարէք. այլ ի լրման ժամանակի ես գամ առ ձեզ, և տամ ձեզ սանդուխս յերկինս ելանել„։ Եւ այս ոչ է անհաւատալի. զի ովան գաղանն հրե- 2772 P. 2767

*) P. [illegible]

**) P. [illegible]

***) P. [illegible]

Ամ. աշխարհի.

շտակ էր, որ ուսուցանէր մարդկան զամենայն հնարս կենցաղավարութեան։ Իսկ իբրև չանսացին հրեշտակին՝ հողմով հողւոյն հոսեաց զաշտարակն և հրով զրախտին զմայլեալ՝ խառնեաց զլեզուսն 72 ձայնս ի պատճառս իմաստից և գեղեցկաբանութեանց. — որպէս հելլենն փափկական և հռովմայեցին սաստկական, հոնն սպառնական և ասորին աղաչական, պարսիկն պերճական և ալանըն գեղեցկական, գութն ծաղրական և եգիպտացին խարխափական, հնդիկն ճճուողական և հայն համեմական. բայց բուն՝ լեզուն արապն, մնաց առ Եբերայ, զոր ի յարութեանն այնու խօսիմք։ Եհաս որդւոյն Սեմայ 25 լեզու և 37 աշխարհ. Քամայ 32 լեզու և 7 մեծամեծ աշխարհ. Յաբեթի 15 լեզու և 12 բնաշխարհ։

Իսկ Բէլ ի վաթսնականգնեան հասակն իւր հպարտացեալ՝ հնազանդեաց իւր զամենայն ազգս և ետ պաշտել զինքն, բաց ի Հայկայ քաջէ, որ ութ եղբարբք իւր և 300 ոգւովք գայ բնակէ ի Հայք ի Հարք գաւառի, և զեզերս իւր ցրուէ ի Տրապիզոնէ մինչև ի Կարխալս և ի Դարբանդ։ Եւ ինքն սպանանէ նետիւ զՆեբրովթ, տիրելով Դարբանդայ և Բասենայ և Մուղանայ և Ատրպատականի, Մարաց և Մծբնայ, Միջագետաց և Մելտինայ, Կոկիսոնայ և Կեսարիայ, Կոզոնիայ և Սպերայ, Խաղտեաց և Քարթլայ, Սնեթայ և Կովկասու՝ ընլով զմիջոցս այսց աշխարհաց։ Իսկ ի քակել աշտարակին և ի ցրման ազգացն յաշխարհս իւրեանց, որ որ յերկիրն մտին՝ զայն տարեմուտ անուանեցին և կարգեցին։

P. 2902 2907 Ռազա և Սուրայ լեալ ամաց 135 ծնան զՍերուք, որ շինեաց զՍրուճ։ Իսկ Արմենեակ որդի Հայկայ բնակէ ի լեառնամէջ դաշտի և անուանէ զլեառն Արագած։ Բայց Բէլ Թագաւորէ ամենայն

ամ. աշխարհ.

Ասխաստանի բայց ՚ի Հնդկաց՝ ամս 62. և զկնի նորա թագաւորք 36 զամս 1300. վերջինն Սարդանաբալլայ էր, որում քարոզեաց Յովնան: Իսկ ՚ի 15 ամին Բելայ թագաւորեաց Սիկիոնացոցն Եգիալեւս, և այլ ևս թագաւորք 26 զամս 958: Ըստ այսմ թագաւորէ Կամբիւրոս քաղդէացի՝ ամս 85: Սա շինեաց զՀաւշ քաղաք, որ է Ասպահան. և վաճառէր զգերեալսն: Նա սկսաւ ոսկեհանութիւն և արծաթագործութիւն և զինագործութիւն:

Սերուք և Մելքայ լեալ ամաց 130 ծնան զՆաքովր: Արմայիս շինէ զԱրմաւիր և զգետն անուանէ յանուն թոռին իւրոյ Երասայ՝ Երասխ: Ըստ թագաւորէ Սամիրաւս 72 ամս. սա երիս աչս ունէր և եղջիւրս, յաղթեաց ազգին Քամայ, շինեաց բազում քաղաքս, ետ չափըս և կշիռս և զոյնս ներկուածոյ և նկարս տաճարաց, և դրամս և զաճեկանս անուամբ կնքոյ իւրոյ, և ապրիշիմագործութիւնս և պատկերս ՚ի կտաւս: 3037 P. 3032

Նաքովր և Յեսքայ լեալ ամաց 79 ծնան զԹարայ: Ամասիա անուանեաց զլեառն մեծ Մասիս: Յայնմ ժամանակի յայտնեցան Ամազոնքն, որ է կանանց զինուորութիւնք յազգէ Թորգոմայ (որոյ) զտեալ զժառութիւն ՚ի զաւրս՝ սպան զամենայն արու և արար զօրս ՚ի կանանց, և եդ զաթոռն յԱղուան քաղաքի և աւերէր զաշխարհ. ժողովեալ միաբան թագաւորք բարձին զնա: ՚Ի Բաբելոն թագաւորեաց Արփաքսադ՝ ամս 58*) և Վիլաւս աթուրեցի ամս 62: Շինեցաւ Դամասկոս Յովսէկ՝ յորդոյ Արամայ: Իսկ Պեղամ շինեաց զՊեղարքունի և զՊառնի, և զՍիւնիք ետ Սիսակայ: 3116 P. 3111

*) P. 18.

աշխարհի.
P. 3184 3186 Թարայ և Յեղնայ լեալ ամաց 70 ծնան զԱբրահամ: Իսկ Հարմայ և որդի իւր Արամ՝ որով ամենայն ազգք զմեզ արմէն անուանեն: Սա շինեաց զՄաժակ, որ յետոյ Կեսարիա անուանեցաւ: Աստ առաջին հարստութիւն Եգիպտացւոց, Մենէս Թինացի և սորա եօթն որդիք ամս 258. սոցա վերջինն Պարէհ, զոր ասեն Աղեքսանդր: Մելքիսեդեկ քանանացի քահանայ Աստուծոյ շինեաց զԵրուսաղէմ: Իսկ Նինոս զԱթուր Նինուէ կոչեաց: Շինեաց Շամիրամ զՎան ի Հայս, և հարթեաց զհող երկրին Ասորոց վասն ջրհեղեղաց և զԱբրահամ աշխատեցոյց ի գործն: Իսկ ի բազմանալ կռոցն առաքեաց Աստուած հողմ, և ցրուեալ զկուռսն կործանեաց ի տեղիս. և արար հողաբլուրս ի վերայ նոցա, զոր Թէլս*) անուանեն: Զայս իմացեալ Շամիրամ շինէ բերդս ի վերայ նոցա. վասն այն զեզերին կախարդքն ի բերդս աւերս և ի բլուրս հողէ: Աբրահամամօրն՝ Մալքաթայ և Սառային՝ Զմրութայ:

P. 3284 3286 Աբրահամ և Սառայ. սա հնգետասնամեայ խնդրեաց զԱստուած և ի վաթսուն ամի եւս զԱստուած և ասէ. „ահա զաւք զԱստուած, աւրհնեալ է ակրութիւնդ քո. և փառք քո լցցէ զամենայն երկիր“: Եթող նա զկինն ի Քաղդէացւոցն և զորդին Ովրէատես. յութսուն և ի վեց ամին ծնաւ զԻսմայէլ ի Հագարայ, յորմէ սերեցան Տաճիկք: Կզեմ ասէ. թէ յառաջ քան զԱբրահամ կայր թլփատութիւն ի կողմանս հարաւոյ արուաց և իգաց. վասն այնր ի 99 ամին ետ նմա Աստուած ուխտ թլփատել զարուս: Ի հարիւր ամին ծնաւ զԻսահակ. և ի 148 ամին առ կին զԿենդուրայ և ծնաւ վեց որդիս՝ զԶմրան, զՅօ-

*) Թէլ.

Ան. աշխարհէ.

կան, զՅեկտան, զՄադիան, զՆաբոգ և զՄովլուէ: Ի սոցանէ են Պահլաւքն և Մողքն, Խազայիքն և Թաթարն, որ է Մուշկ*): Աստ Արայն գեղեցիկ սպանաւ ի Շամիրամայ:

Սահակ և Ռեբեկայ լեալ ամաց 60 ծնան զՅեսաւ, յորմէ Եդովմայեցիք, որ արդ ասին փռանկք, և զՅակոբ, որ Իսրայէլ կոչեցաւ: Աստ Անուշաւանն տիրէ հայրենեաց իւրոց՝ Հայոց, հրամանաւ շայլն Շամիրամայ: Ի սոյնս Թագաւորէ Արգիացւոցն Ինաքոս, զաւառ Ովայ, և այլ 13 Թագաւորք զամս 544: Իշխանացաւ յԵգիպտոս Ապիս, որ է Սարապիս, և աստուած կարծեցաւ: — Նեկեմիս եգիտ զարհեստ բժշկութեան ի Մեմփիս քաղաքի: 3346

Յակոբ եւ Լիա, Ռաքէլ, Բալլայ, Զելփայ, ութսունևութ ամաց լեալ՝ ծնան զՅուդայ և զեղբարս նորա: Փորոն Թագաւոր Եգիպտացւոց եդ օրէնս և դատաւորս: Աստ՝ զաւառ Կրոնոսի կոչեաց զաշխարհն Ատտիկէ: Աստ Պարետ հայկազնն: Յովսէփ եօթնևտասնամեայ վաճառեցաւ. երեքտասան ամ ի բանդին. 110 ամաց մեռաւ: ԶՅակոբ մինչ ի Թաղումն տանելին՝ զգլուխն ի վեր կալեալ օծեալ արձանին ողջոյն ետ: 3434 P. 3438

Յուդայ ամաց 48 ծնաւ զՓարէս և զԶարայ ի Թամարայ: Աստ Արոկ: Եւ Թագաւորեաց Աթենացւոցն Կեկրոփս և այլ 38 Թագաւորք զամս՝ 873: Սա շինեաց զԱթէնս անուամբ կնոջ իւրոյ, և զբնակիչս Մեմփացւոց բերեալ՝ յԱթէնս բնակեցոյց. սերմանեաց զիմաստութիւն և զմէջերկրեայս Կապադովկիս անուանեաց: Աստ էր Յովբ արդարն. 41 ամաց լեալ պատերազմեցաւ ընդ նմա սատանայ. 30 ամ ի փորձս 3482 P. 348

*) P. Մոսկ.

կալով, եօթն ՚ի հարուածս և 170 ամ յետոյ, որ են ամք 248. և եհաս յաւուրսն Մովսիսի: Ղեւի 48 ամաց ծնաւ զԿահաթ: Կահաթ 63 ամաց ծնաւ զԱմրամ: Ամրամ եօթանասնամեայ ծնաւ զՄովսէս:

P. 3539 3541 Փարէս լեալ ամաց 59 ծնաւ զԵզրոն: Առ Օ՝աւէն: Քաջ պատկերագործն Պիգաւլեց. որ թուէր տեսողացն շարժուն գոլ պատկերին: Մենափթիս թագաւոր Եգիպտացւոցն առնէր գետառյղ զօղայն երեք ամ:

P. 3597 3599 Եզրոն լեալ ամաց 58 ծնաւ զԱրամ: Ութսուն ամ երկրագործութեան Իսրայելի և 225 ամ ծառայութեանն: Մովսէս տասնամեայ տուաւ յուսումն: Յանէս և Յամրէս, որք առին զորդիսն Իսրայելի և տարան հնգետասանօրեայ ճանապարհ ընդ անապատն. և շինեցին զրախտ ինքեանց հնգետասան ամ և յԻսրայելէ 980 տղայս զոհեցին դիւաց և հնազանդեալ գնոտ եդին պահապանս դրախտին. և ութսուն*) դեռ ևս ոչ հնազանդեցան՝ մինչև կրկին 980 տղայս այլ զոհեցին, և ապա հնազանդեցան բաց ՚ի շաբաթ ամաց:

Գնաց Մովսէս երկոտասան հազար զօրօք արագլօք և այծեմնօք յԵթովպիա. տասն ամ պատերազմեալ՝ էառ զաշխարհն և զթագուհին նորա Թարբիս**): Առ սոքին առ Դեւկալոնիւ ջրհեղեղ ՚ի Թեսաղիա, և առ Փայեթոնիւ հրայրեացք յԵթովպիա, և այլ բազում ապականութիւնք ՚ի տեղիս տեղիս, որպէս Պղատոն ասէ: Տասն հարուածովք պատժեաց Մովսէս զԵգիպտոս և զՓարաւոն: ՚Ի հինգշաբաթի եհան զԻսրայէլ և ՚ի կիրակէ անցին ընդ ծովն: Ապեղլիմոս ասէ, թէ նոր լեզուաւ տայցին զօրհնեցուքն:

*) P. 400.

**) P. Թերբիա.

Արամ 47 ամաց ծնաւ զԱմինադաբ։ Յօթն ամս 3644
շարժեցաւ Եգիպտոս, և ամենայն մարդ զգործն, յորում կայր՝ աստուածացոյց. զի ոչ ել զհետ փարաւոնի։ Ի նմին ամի կազմեաց զխորանն յօրինակ աշխարհի ամիս եօթն ըստ եօթնօրեայ գործոյն Աստուծոյ։ Տախտակքն ակնէքին պայծառք և գիրն երկու զիմաց երևէր։ Յառաջին տախտակէն յերկրորդն է ամիսէ։ Հարիւր քսան ամաց մեռաւ Մովսէս և Թաղեցաւ իւր գաւազանաւն։

Ամինադաբ լեալ 45 ամաց ծնաւ զՆաասոն։ 3689
Քոյրն Նաասոնի Եղիսաբեթ տուաւ կին Եղիազարու քահանայի, յորոց ծնաւ փենէհէզ. որ ապրեցաւ 370 ամ։ Դուանոս եղբայր Եգիպտոսի յիսուն դստերօքն կոտորեաց զ յիսուն որդիս եղբօրն իւրոյ. միայն մնաց Լինգոս իմաստունն՝ աչացեալն յամենայն կողմանց։ Փիւնիկս և Կադմոս եկեալ ի Փիւնիկէ արարին գիր Յունաց. ի սոցանէ գտաւ Թուականութիւնն, զի վաճառականք էին։ Իսկ աստեղաբաշխութիւնն գտաւ ի Զուրաստրա և ի Քաւրուստրա քաղդէացւոց, զի երկիրն պարզ և անամպ է միշտ։ Իսկ երկրաչափութիւնն գտաւ առ Եգիպտացիսն, զի Նեղոս գետ յամենայն ամի առողանէ զերկիրն, և ապականաքան ձողաչափ առնեն զանդս։ Իսկ երաժշտականութիւնն գտաւ առ Թրակացիսն, զի ի մէջ ծովուց են՝ ուսան ի հնչմանէ յաւշկապարկաց։ Իսկ Պրամիւթէս զգար և զկոծատն եգիտ։

Նաասոն՝ քառասունեւչորսամեայ ծնաւ զՍաղմոն։ 3733
Սա եկաց Յեսու իշխան յետ Մովսիսի ամս 27, և 110 ամաց կեաց մեռաւ։ Սա անցոյց զԻսրայէլ ընդ Յորդանան. ձայնիւ էառ զԵրիքով. սպան 29 թագաւորս և զերկիրն Քանանու վիճակաւ ետ որդւոյն

Ամ. աշխարհ.

Իսրայէլի։ Առ սա Տորք. — իսկ Քանիդէս քանանացի եկն ի Հայս։

3768 Սաղմոն երեսուն և հինգամեայ ծնաւ զԲոոս ի Ռաքաբայ։ Առ սա Փիլարտոն բարուախօս ամենայն կենդանեաց. և արիսպագոսն շինի յԱթէնս։ Գոթոնիէլ ամս 40։ Աւովդ յերկուց ձեռաց յաջողեալ։ Եւ Սամեգար, որ սպան ի փղշտացւոց զհարիւր այր մաճիւն ամս 90։ Առ սա Հաւանակ, Վաշտակ, Հայկակ, Ամբակ, Առնակ։ Ծառայէ Իսրայէլ այլազգեացն ամս 18։

3876 Բոոս հարիւրեւութամեայ ծնաւ զՈվբէթ ի Ռութայ։ Դեբովրայ և Բարաք ամս 40. Գեդէոն ամս 40. սորա էին 70 որդիք։ Աբիմելէք ամս 3. Թովղայ ամս 23. Յայիր ամս 22։ Առ սա Շաւարշ, Նորայր, Վստամ, Կար, Գոռակ։ Ի Յոյնս Յովն սպարապետ Աթենացւոց, յորմէ Յոյնք անուանեցան։ Իսկ ի Ռոմ հարիւր իմաստասէրք ի միում գիշերի երազ տեսին եօթն արեգակունս, և վեցերորդն պայծառ քան զամենայն, զոր Սաբիլէ Թագուհին մեկնեաց ի վերայ եօթն դարուցս. իսկ պայծառ դարըն, որ ծնաւ զՔրիստոս։ Թագաւորեաց ի Թեբայիդ Ապոգոն երաժիշտ, որ յերգելն շարժէր զքարինս։ Այլ և Դեդաւլայ հիւսն և նկարիչ՝ զպատկերս զոր անէր շարժուն թուեցուցանէր։ Հերակլէս զԻլիոն աւերէ։

3977 Ովբէթ հարիւր և մի ամաց ծնաւ զՅեսսէ։ Յեփթայէ ամս վեց. սա զդուստրն իւր Սեղիդի՝ իւր խաչ անուանեաց և զոհեաց Աստուծոյ։ Եսեբոն ամս 7. Իղոն ամս 10. Լաբդոն ամս 8. Սամսոն քաջ ամս 20։ Առ սա Հրանդ, Ընձակ, Գլակ, Հորոյ, Զարմայր։ Թագաւորէ Հռոմայեցոց Ենիաս և այլ թագաւորք 16 մինչև ցՌոմիլոս, որ զՀռոմ շինեաց,

ամս 426: Ապա այլ Թագաւորք վեց՝ ամս 207: Ապա հիպատքն, բռնաւանքն, ռամկապետքն, դիկտատորքն, հիւպատքն, մինչև ի Գայիոս Յուլիոս ամս 460. և այլ ևս 46 ամք:

Յեսսէ հարիւրերեսնամեայ ծնաւ զԴաւիթ արքայ: Մեռաւ Օզիս, որ է Արամազդ, ի Կրետէ 880 ամաց: Փիլիմոն արար դաս երաժշտաց և պատկերս շարժունս: Լամգար դատաւոր ամս 40: Հեղի քահանայ և որդիք իւր ամս 20: Գերեցաւ տապանակն յայլազգեաց ամիս եօթն: Սամուէլ մարգարէ և Սաւուղ ամս 40: 4107

Դաւիթ արքայ ամս 40 և մեռաւ 70 ամաց: Ասա Պերձն բազմակեաց: Դաւիթ քսանամեայ սպան զԳողիաթ, և ի տասներորդ ամի Թագաւորութեանն իւրոյ եհան զտապանակն ի տանէն Աբեդդարայ: Քահանայ Աբիաթար. մարգարէք՝ Գադ, Ասափ, Նաթան: — Արար (Դաւիթ) զՂևտացիսն 24 դաս սաղմոսաց առաջի տապանակին: 4147 P. 4165

Սողոմոն ամս 40. սա ի չորրորդ ամին շինեաց զտաճարըն ազանչելատեսիլ և կարգեաց զդասս Ղևտացոցն: Այր մի Աբգամանոս անուն ի Տիւրոսէ լուծանէր ամենայն առակս Սողոմոնի, և ինքն առնէր այլ առակս, որով տարակուսէր Սողոմոն: Սա էին իմաստասէրքն Հոմերոս և Խոխոդոս. մարգարէք՝ Սադովկ, Աքիայ, Սամիայ. քահանայ՝ Սադովկ, արար զերգեանն: 4162 P. 4169

Ռոբովամ ամս եօթնևտասն: Տասն ցեղք Իսրայէլի Թագաւորեցուցին զԵրոբովամ զորդին Նաբատայ ամս 22: Եւ Սուսակիմ Եգիպտացի և կողոպտեաց զտաճարն: Մարգարէք՝ Իուդ, Յովա, Յովէլ, Ազարիա, Անանիա: 4186

Աբիայ ամս երեք՝ Իսրայէլի. Նաբատ՝ ամս երկու կարծաւրաց: P. 4189

4230 Ասայ ամս 41՝ իշխեալ. Բաասա ամս 24. Եղայ ամս 2. Զամրի աւուրս 7. Ամրի ամս 12. — սա գնեաց զլեառն Սամերոն, շինեաց քաղաք և անուանեաց Սամարիա, յետոյ կոչեցաւ Սեբաստիա, որ է Մամլուզ:

4255 Յովսափաթ ամս 25՝ իշխեալ. Աքայաբ ամս 22. Ոքոզիա ամս 2: Մարգարէք՝ Եղիա, Եղիսէէ, Յեու, Ոզիէլ, Միքիա՝ որդի Յիմղայ:

4262 Յովրամ ամս 8՝ իշխեալ. Յովրամ ամս 12՝ իշխեալ. յեօթներորդ ամին վերացաւ Եղիա հրեղէն կառօք յերկինս:

4271 Ոքոզիա ամ մի: Գոթողիա, մայր սորա, ամս եօթն իշխեալ. Յէու ամս 28. — սա կոտորեաց զեօթանասուն որդիսն Աքայաբու: Մարգարէք՝ Ազարիա, Յովնադաբ՝ որդի Ռաքաբիմայ, որ այժմ են յերկրին երանելեաց: Կարքեդոն քաղաք շինեցաւ յԱփրիկէ:

4311 Յովաս ամս 40: քահանայ Յովիդայ, որ եդ զկորբանն ի տաճարին և եկաց ամս 130՝ իշխեալ. Յովաքազ ամս 17:

4340 Ամասիա ամս 29 իշխեալ. Յովաս ամս 16. Յերոբամ ամս 41:

4392 Ոզիա ամս 52: Եւ Թագղաթփաղասար և գերեաց զՅուդայ և զԵրուսաղէմի մեծ մասն, և այս սկիզբն գերութեանն իսրայելի: Ի 49 ամին Ոզիայ եղաւ առաջին ողիմպիադն: Իսրայէլի՝ Զաքարիա 6 ամիս. Սելում 45 օր. Մանայեմ ամս 10. — սա ետ զմի յակի երբնջոցն սակս հարկի՝ Փուայի արքայի. Փակէէ ամս 10: Մարգարէք՝ Անանիա, Ովսէէ, Ամոս, Յովէլ, Եսայի, Յունան, Նաւում: Առ Թագաւորէ Մարաց Վարբակ և այլ 8 Թագաւորք ամս 270. սոցա վերջինն Աժդահակ էր, զոր սպան Տիգրան հայ: Ի սոյն աւուրս Թագաւորեն Քաղդէացիքն որ Բաբելա-

ցիք կոչին․ փուոյ (և այլ) երեքտասան թագաւորք զամս 200 մինչև ցԴարեհ Արշաւիր, զոր սպան Տիգրան։ Ասա թագաւորեն Մակեդոնացիք, կարանոս և այլ 40 թագաւորք ամս 647։ Սոցա վերջինն սուտ փիլիպոսն էր։ Դարձեալ թագաւորեն Լիդացիք Արդեայ և ինն թագաւորք 230 ամ։

Յովաթամ ամս 16՝ Իսրայէլի. Փակէէ ամս 20. 4408
Աքազ ամս 16. Ովսէէ ամս 9։ Ասա գերեաց Սաղմա- P. 4424
նասար զԻսրայէլ և եբարձ զթագաւորութիւնն։ Մարգարէ՝ Միքիա յերկոտասանիցն։ Իսրայէլի կացին թագաւորք 19 ամս 250։ Առաքեաց Սաղմանասար չորս ազգս կռաօք իւրեանց պահապանս Սամարիայ. իսկ ի սատակել գնոսա գազանացն առաքեաց զքահանայն Եզր և զհինգ գիրս Մովսէսի ասորերէն։

Եզեկիա ամս 29։ Եւ Սենեքարիմ ի վերայ 4453
Հրէաստանի եկն զեկիկերն և սատակեցաւ 185 հազարաւն։ Ռոմիլոս զՀռոմ շինեաց և Բիւզաս իշխան զԲիւզանդիոն, զոր յետ 970 ամի Կոստանդիանոս մեծապէս շինեաց։ Ասա Արբունն։

Մանասէ ամս 55. սա ասաց „զտէր ամենակալն“ 4508
ի Նինուէ ի գերութեանն և արձակեցաւ։ Ասա Բագուկ։ Ամոն ամս 12. Յովսիա ամս 31։ Ասա Հոյ, Յաւաւկ։ Մարգարէք՝ Խողդիայ, Երեմիա, Սոփոնիա։ Ասա Տուբիթ և Տուբիա՝ փեսայ Հռագուէլի։ 4551 P. 4553

Յովաքազ ամս 3. զսա գերի տարաւ Նաքաւով
փարաւոն կաղ։ Ասա Կայպակ, Սկայորդի։ Եղիակիմ P. 4566
որ և Յովակիմ ամս 12։ Նաբուգոդոնոսոր զՀրէաստան
հնազանդեաց և հարկ եդ։ Յովակիմ, որ և Յեքոնիա՝ P. 4569
ամս 3։ Ասա թագաւորէ ի Հայս Պարոյր առաջին և այլ 19 թագաւորք. — սոքա բարձան յԱղեքսա-

աշխարհէ.

նդրէ: Մարգարէք՝ Բարուք, Մատթանի, որ և
P. 4580 Սեդեկիա ամս 11: Հայոց՝ Հրաչեայ. Վրաց առաջին թագաւոր Փառնաւազ, որ ՚ի վեց լեզուէ արար զվրացերէնն, նա և զգիր նորա: Եկն ՙՆաբուքոդոնոսոր պաշարեաց զԵրուսաղէմ և էառ զնա, և կուրացոյց զՍեդեկիա. և յետ եօթն ամաց ՙՆաբուզարդան դահճապետն այրեաց զտաճարն:

P. 4636 Յեքոնիա 37 ամ ՚ի բանտին ՚ի Բաբելոն ծնաւ զՍաղաթիէլ: Յութն ամի գերութեանն մարգարէք՝ Դանիէլ՝ երեք մանկունք, Եզեկիէլ. իսկ ՚ի 38 ամի գերութեանն մարգարէք՝ Անգեա, Զաքարիա, Աբրակում, Մաղաքիա, Սաղաթիէլ, Եզր, որ Հոգւով սրբով գրեաց ՚ի մտաց զամենայն գիրս աւրինաց և մարգարէից: Իմարովդաք արքայ եհան զՅեքոնիա ՚ի բանտէն, զհետ նորա Բաղտասար, որ ետես զձեռնն հրեղէն, որ գրեաց յորմն վերին գիրս՝ մանէ, թեկեղ, փարէս զոր մեկնեաց Դանիէլ, որ և ետես զտեսիլ չորից գազանացն: Աստ Փառնաւազ, Պաճոյճ, Կոռնակ: Քիրամ արքայ Ծուրայ եկաց ամս 30. սա էր յաւուրս Դաւթի:

P. 4692 Սաղաթիէլ լեալ ամաց 56 ծնաւ զԶօրաբաբէլ: Աստ յերկրորդում ամի Դարեհի մարի լցաւ առաջին եօթանասներորդ ամ գերութեանն, և արկաւ Դանիէլ ՚ի գուբ զառաջինն և ետես զտեսիլ եօթներորդաց եւթանասնից: Աստ Դարեհ Արշամայ, առ որ գրեաց Զօրաբաբէլ, եթէ քան զամենայն զօրաւոր ճշմարտութիւնն է: Աստ Կիւրոս պարսիկ զամս երեսուն: Սա սպան զերիս մանկունսն, և կրկին արկաւ Դանիէլ ՚ի մէջ եօթն առիւծոց ՚ի գուբն: Կիւրոս ետ զՍաղմանասար հանդերձապետն Յուդայ զ5469 անօթս ոսկեղէնս և արծաթեղէնս ՚ի սպասուց տաճարին, և զհինգ բիւրս ՚ի Հրէից արձակեաց ՚ի 17

ամ. աշխարհի.

ամի Թագաւորութեան իւրոյ, որք եկեալ հիմն արկին տաճարին. բայց անկատար մնայ վասն շրջակայ ազգացն։ Իսկ յ30 ամին Վշտասպէն եւ Զօրաբաբէլ յԵրուսաղէմ և շինեաց զտաճարն զամս չորս. և առ լցաւ երկրորդ եօթանասունն ամ գերութեանն Իսրայէլի և սկսան եօթներորդքն Դանիէլի։ Ի Զօրաբաբէլէ ցՅուդայ Մակաբէ 332 ամք են. ի Յուդայէ ցծննդեան Քրիստոսի 151 ամք։ Եօթներորդքն Դանիէլի եօթանասուն և կէս ամք են։ Իսկ մի կէսն Քրիստոսի 34 ամք են *)։ Քահանայ՝ Յեսու, որդի Յովսեդեկեայ։ Ցմուրխ բամբիշն Մասագեթաց սպան զԿիւրոս։ Իսկ Յուդիթ բեդաղուացի սպան զՀողեփեռնէս Թաթար Թուրք։

Զօրաբաբէլ լեալ ամաց 56 ծնաւ զԱբիուդ։ 4680
Ապա Արտաշէս երկայնաբազուկ, որ ի հինգերորդ ամին իւրոյ առաքեաց զԵզր քահանայ շինել զպարիսպն Երուսաղեմի. առ Եզր որոշեաց զՀրէայսն և զբաբելացի արս և կանայս։ Իսկ ի քսաներորդ ամին արձակեաց Արտաշէս զՆէեմի տակառապետն օգնական Եզրի։ Սա եղիտ զհուրըն ի ջրհորին, որ վառեցաւ տիղմն յետ 70 ամաց։ Ապա Մուրթքէ հաւատարիմն և Եսթեր փոքրիկ աղջիկն։ — Վայ զհաման ամաղեկացին։ Քահանայք՝ Յակիմոս և Եղիարիսոս։ Ապա Փառոս, Հայկակ, Երուանդ, Տիգրան, Բար։ 4727 P. 4725

Աբիուդ լեալ ամաց 45 ծնաւ զԵղիակիմ։ Ապա Տիրան, Վահագն, Արաւան, Ներսեհ։ Քահանայ՝ Յուդայ։

Եղիակիմ լեալ ամաց 60 ծնաւ զԱզովր։ Ապա Զարեհ, Արմոգ, Բագամ, Վան, Վահէ, զոր սպան Աղեքսանդր։ 4787 P. 4785

---

*) P. Հ. նդ. ամ.

աշխարհի.

Ազովր լեալ ամաց 32 ծնաւ զՍադովկ։

P. 4824 4826 Սադովկ լեալ ամաց 31 ծնաւ զԱքին։ Քահա-
P. 4855 4857 նայք՝ Յովհաննէս, Յադդուա։ Առ Պղատոն և Արի-
ստոտէլ Ստագիրացի. իսկ Աղէքսանդր մակեդոնացին
տիեզերակալեաց և զերեսուն և հինգ թագաւորս կորոյս
յաշխարհէ. Մակեդոնացոց 40 թագաւորք են յետ և
յառաջ Աղէքսանդրի գամս 647։ Առ երկու թա-
գաւորք սախացեալ՝ Անտիգոնոս ամս 18 և Դեմետրոս
ամս 17։ Ընդ սոսին թագաւորեցին Պտղոմեանքն
յԵգիպտոս, որք ասպարիզօք չափեցին զերկիր՝ զբնա-
կութիւն մարդկան. 12 թագաւորք ամս 296։

4889 Աքին լեալ ամաց 34 ծնաւ զԵղիուդ. քահա-
նայք՝ Ոնիա, Սիմէոն արդարն, Եղիազար։ Առ 72
թարգմանիչքն հրամանաւ Պտղոմեայ զգիրս Եբրայե-
ցւոցն ի յոյն լեզու փոխադրեցին։ Սիմէոն ծերունի։
Առ թագաւորէ Ասորոց և վերին կողմանցն Բա-
բելացոց Սելևկիոս ամս 38. թագաւորք 17 գամս 244.
ի սոցանէ ապստամբեաց Արշակ քաջ ի Բահլ քա-
ղաքէ ամս 31. թագաւորք 13 գամս 454։

4919 Եղիուդ լեալ ամաց 30 ծնանի զԵղիազար. քա-
հանայք՝ Մանասէ, Ոնիայ, Շմաւոն, սորա որդի է
P. 4912 4981 Յեսու Սիրաքայ իմաստագիր՝ նմանեալ Սողոմոնի։

Եղիազար լեալ ամաց 62 ծնաւ զՄատթան. քա-
հանայք՝ Ոնիայ, Յեսով, Մենելաւոս, Ալկիմոս. առ
սոքօք Անտիոքոս թագաւոր բռնադատէր զՀրէայսն
թողուլ զօրէնս. յորմէ չարչարէին Եղիազար ծեր
քահանայ և եօթն որդիքն Թոդասայ և Շմաւոնի՝
Աւար, Մակար, Խորէն, Խորսէն, Ադինադար, Թա-
րախ և Գադիդէ. առ որովք Մատաթիա քահանայ ի
Մովդէիմ գեղջէ և Յուդա Մակաբէ և վեց եղբարք
նորա զինեալք և սաղաւարտեալք հալածէին զզօրս
Ասորոց։ Առ Արտաշէս, Արշակ մեծ, որ թագաւ-

որեցոյց Հայոց գեղեցայր իւր Վաղարշակ ամս 22. մեռեալ ի Մծբին։

Մաթաթան լեալ ամաց 38 ծնաւ զՅակոբ. քահանայք՝ Յափաթան ամս 10. Դամաւն ամս 9։ Առ Վաղարշակ թագաւորէ ի Հայս. թագաւորք 26 զամս 562։ 5020

Յակոբ լեալ ամաց 60 ծնանի զՅովսէփ. քահանայք՝ Սիմէոն ամս 8. սա առաքեաց ի Հռոմ փահան ոսկի և ետ բերել տախտակ պղնձի ի նշան ուխտի. Հիւրկանոս ամս 26. Արիստոբուլոս ամ մի։ Սա ի վերայ քահանայութեան թագ եդ։ Առ Արշակաւ Արշանակ. Արշէզ. իսկ ի Հայս՝ Արշակ, Արտաշէս, Տիգրան, Արտաւազ ամսուակեաց։ 5080

Յովսէփ աստուածահայրն 41 ամաց էր, յորժամ ծնաւ ի Մարիամայ տէրն մեր Յիսուս Քրիստոս ի Բեթղեհէմ։ Քահանայք՝ Յոհաննէս ամս 27. Աղեքսանդրս կին ամս 9. Հիւրկանոս ամս 34։ Ապա թագաւորէ Հերովդէս այլազգի, յորոյ յերեսուներկուամին ծնաւ Քրիստոս, Աւգոստոսի 42, Արշաւրոյ 21։ Հայոց Արշամ, որ հարկեաց Հռոմայեցոց. և Աբգար։ 5198

ՅԱդամայ մինչև ի ջրհեղեղն են ամք 2262 *). անտի մինչև զԱբրահամ ամք 1019. անտի մինչև յելսն Իսրայելի յԵգիպտոսէ ամք 430. անտի մինչև ի Սողոմոնի շինած տաճարին ամք 480. անտի մինչ ի Զօրաբաբելի շինած տաճարին ամք 477. անտի մինչև ի ծնունդն Քրիստոսի 530. միանգամայն ամք 5198.

---

*) Բ. 2242. անտի յոշատրակն — 525. անտի յԱբրահամ ամս 417. անտի յելս Եգիպտոսէ — 505. անտի մինչև ի Սողոմոնի շինած տաճարին — 480. անտի ի Զօրաբաբելի շինած տաճարին 511. անտի ի ծնունդն Քրիստոսի — 518. միանգամայն ամս 5198. էառ (?) ... ի ծննդենէ Քրիստոսի ի հայ թուն ամս 553.

Մինչև ցայս վայր առաջնորդ ունելով զնախադասս և զԹագաւորս՝ շարադրեցի ի նոսա զգլխաւորսն պատմութեանցս, համառօտելով զմի ի հազարաց. իսկ յայսմ հետէ անկայ ի ծածուկ խորհրդոց, զի ամենայն աշխատութիւնք մեր վասն Հայաստան ազգիս և աշխարհիս պատմութեանց են. սակայն զի ոչ են ի բնէ ինքնակալ իշխանք և Թագաւորք մեր, հարկ է զի ընդ որոց ձեռամբ անկեալ կան՝ զնոցուն Թագաւորսն շարադրել, որպէս զի մերն ամբողջ կալցի զկարգն։ Արդ որպէս ի սկզբանն ի Հայկայ հետէ հնազանդեցան Հայք Ասորոց, յետոյ Մարաց, Պարսից, Մակեդոնացոց, Արշակունեաց, Տաճկաց, Թուրքաց և այժմ Թաթարաց, սոյնպէս և երբեմն Հռովմոց, յետոյ Յունաց և այժմ պարտ է զՀռոմս կարգաւորանել և զՊարսիկս։

Միածին Որդին ի Հօրէ՝ եղև միածին որդի ի մօրէ ի Մարիամայ աստուածածնէ։ Ութօրեայ Թլփատեալ ի բազուկս Յովսեփայ ի Զաքարիայ քահանայապետէ, քառասնօրեայ ի տաճարն ընծայեալ՝ ի Սիմեոնէ և յԱննայէ գոհաբանեալ, որպէս ի մոգուցն պատարագօք պատուեալ, երթեալ յԵգիպտոս և 500 բիւր կուռս կործանեալ, և զպայմանեն պատճառն պատմութեան իւրոյ Թողեալ՝ դարձեալ և ի Գալիլեա ունեալ, երկոտասանամեայ ի տաճարին վարդապետեալ, երեսնամեայ ի Յորդանան ի Յովհաննէ մկրտեալ և ծիրանի բայաբորբ բարբառով ի Հօրէ և յարփիախա-

ղայ աղանդակերպ Հոգւոյն վկայեալ, ի Սամոսայ ընդ սեաւ սատանայական մրցեալ և յաղթեալ և նշանօք բազմօք բարեհաճեալ, երկոտասան և եօթանասուներկու աշակերտս ընարեալ և նոքօք զտիեզերս աշակերտեալ, ի խանդագաղ Հրէից խաչեալ, և ի Յովսեփայ թաղեալ, զգժոխս աւերեալ և զորս հաւատով զնա ծանեան ազատեալ, ի մարդ մեղաւոր ած պաշտեցեալ և Ջ կախարդ անդեղջ մնացեալ. զնոսա ոչ ազատեալ ինքնիշխանութեամբ յարուցեալ և յայս յանդիման յերկինս վերացեալ, զՀոգին սուրբ յառաքեալսն առաքեալ, որք զերեսուն հազարս աշակերտեցին ի Հրէից և ապա ընթացան յոլորս տիեզերաց և դարձուցին զազգս մարդկան ի խաւարէ կռապաշտութեան ի լոյս աստուածգիտութեան:

Թագաւորին յաւիտենից մատուցին մոգքն զընծայս P.34
խորհրդոց, Մելքոն զոսկի, Գասպար զխունկ, Բաղդասար զմուռ: Առաքեաց Աբգար առ Յիսուս գիր աղաչանաց. և նա առաքեաց նմա զպատկերն իւր՝ նկարեալ ի դաստառակի, զոր յետոյ Նիկիփոր տարաւ ի Կոստանդնուպօլիս:

Խաչի Յիսուս յԵրուսաղէմ վասն մարդկան: 34 P.41
Փիլոն իմաստասէր և Գալիանոս բժիշկ:

Բառնաբաս*) զԱնտիոք զարձայց. Մատթէոս գրեաց 39
զաւետարանն յԵրուսաղէմ եբրայեցի բարբառով:

Սոփն զոր ասաց Ադամոս. Մարկոս գրեաց զաւե- 49 P.48
տարանն յԱղէքսանդրիա լատին լեզուաւ:

Ղուկաս գրեաց զաւետարանն ի Հռոմ և աւա- 56
րտեաց յԱնտիոք սարի գրով. զՅակոբոս սպանին Հրէայքն և զխաչն Քրիստոսի թաղեցին: Ներոն զՊետրոս և զՊօղոս սպան ի Հռոմ:

*) Բ. Պետրոս.

ամ. տեառն.

P.72 70 Վեսպասիանոս կատարեաց զՀրէայսն և եբարձ զքահանայութիւնն և զթագաւորութիւնն։

P.86 96 Յովհաննէս գրեաց զաւետարանն յառաջ ի Պատմոս, յետոյ յԵփեսոս յունարէն։

P.132 89 Արտաշէս շինէ զԱրտաշատ՝ Սեկունդոս լռակեաց իմաստասէր։ Առաջին ժողով Նիկիոյ. որ զՍաբէլ նզովեաց։ Ակիւղաս, Սիմաքոս, Թէոդոտիոն։ Հինգերորդ թարգմանութիւն գտաւ յԵրիքով. վեցերորդ թարգմանութիւն գտաւ յԵմաւս. եօթներորդ թարգմանութիւն արար Որոգինէս վերջինն։

P.291 287 Թագաւորէ Տրդատ և չարչարէ զսուրբն Գրիգոր ամս երկուս. և արկանէ ի վիրապն ամս 13. և ինքն սպանանէ զսուրբ Հռիփսիմեանս ոգիս 36 և հարեալ բարկութեամբ ի Տեառնէ՝ լինի խոզ աւուրս 75 և բժշկի հոգւով և մարմնով ի ձեռն սրբոյն Գրիգորի՝ որդւոյ Անակայ և Ոգոհեայ։ Ձեռնադրի սուրբ Լուսաւորիչն կաթուղիկոս ամենայն արեւելից և հիւսիսոյ, և բերէ ի Հայս զնշխարս Յովհաննու և Աթանագինեայ՝ աների իւրոյ և դնէ ի յԻննակնեայսն և այլ զաւելին ի ձեռն Զենոբայ եպիսկոպոսի։ Նա արար զՏարօնոյ Պատմութիւնն, և Ագաթանգեղոս զՀայոցն։

Հաւատան յԱստուած Վիրք և Միհրան թագաւորն ի ձեռն Նունեայ։ Ուռնայր թագաւորն, և ամենայն Աղուանք ի ձեռն սրբոյն Գրիգորիսի նոյնպէս և մեծն Կոստանդիանոս ի ձեռն սրբոյն Սեղբեստրոսի։

Երթան Տրդատ և սուրբն Գրիգոր ի Հռոմ ի տեսութիւն նորա եօթանասուն հազարօք. գնեն ուխտ ընդ միմեանս երկու արքայքն՝ զարիւն Քրիստոսի խառնել ի մելանն զի մի զրժեսցեն։ Նաւն Հայոց զձախ Անդրէի և յԵրուսաղէմ զսուրբն Յակոբ տեղի իջեանի և զնարից կուսին և կանթեղ մի ի վերայ

զերեզմանին Քրիստոսի։ Իսկ իջումն լուսոյն խնդրուածք է նորա Լուսաւորչի։ Իսկ ի դառնալն ի Հայս հարկանէ Տրդատ զՀոնն ծաղանածին, շինէ զերդն և զամրոյթն Գառնոյ, աւերէ զՅեկղատան, և շինէ զԳաւիթէժ։

Ժողովն Նիկիոյ 318 հայրապետաց, որք նզովեցին զԱրիոս։ Գիւտ խաչին Աստուածընկալ ի Հեղինեայ։ Դադարէ յարոց հալածանս եկեղեցւոյ յարևելս։ Հովիւք թաղեցին զսուրբն Գրիգոր։ Երևումն սուրբ խաչին Աստուածընկալ յաւուրս Կիւրղի։ 325 P.330

Անդրէաս զշարադրութիւն տոմարացն յօրինէր զերկհարիւրակն։ Դինէ Խոսրով զՓուփինէ Մովսէս և Դանիէլ 3870 սրբովք կատարին ի Դիզախայսն։ Արտեմի ընթերցուածն։ Պապ և Աթանագինէս կանամբք և որդւովք ըմպէին յեկեղեցւոջ, հուր անկեալ ի վերուստ անպրնդասցյ արար զնոսա զամենեսին։ 352 P.354

Սուրբն Ներսէս կարգեաց ի Հայս 900 իշխանս բարձր չորս հարիւր եպիսկոպոսունս և երկու հազար վանս. Երևեցան զորք հրեշտակաց՝ գնալով ընդ երկինս։ Աստուածածնարանն, Բարսեղ, Նիւսացին, Եպիփան, որ յայտնեաց զաղանդս մինչ ի Քրիստոս և ի Քրիստոսէ մինչև ցինքն։ 366 P.370

Ժողովն Կոստանդնուպոլսի 150 հայրապետաց, որք նզովեցին զՄակեդոն։ Ծնաւ յԱնտիոք մանուկ մի մարմնօք, չորսանի և չորսձեռնի։ Գերութիւն մեր ազգիս ի Շապհոյ և ակերայց թագաւորացն։ 381 P.396

Տեսանէ սուրբն Սահակ զտեսիլ ապագայիցն։ Յեմաուս ծնաւ այր բ գլխի դ ձեռնի. բ տարի ապրեցաւ և դ օրով մինն մեռաւ յառաջ։ Առ Ոսկիբերանն, որ արար երկոտասան հազար ճառս, որ են ութ հարիւր գիրք։ Յայտնեցան նշխարք նախավկային ի ձեռն Լուկիանոսի քահանայի։ Նաթաղի 402 P.410

Աղեքսանդրացի յօրինեաց զցանկ առաքելոյն և զգործոյն։ Թագաւորքն Յունաց և Պարսից բաժանեցին զաշխարհս մեր ի վերայ ինքեանց։

P.424 423 Սկիզբն դպրութեանց հայ գրոց ի ձեռն սրբոյն Սահակայ և Մեսրովպայ, որք վաթսուն աշակերտօք աշխատեալք թարգմանեցին զամենայն Հին և Նոր կտակարանս։ Կատարեցան աշակերտքն Մաշտոցի յԱստղաբլուրն։

P.438 431 Ժողովն Եփեսոսի երկու հարիւր եպիսկոպոսաց, որք նզովեցին զՆեստոր։ Սուրբն Մարութայ շինէ զՄուփարղին և ժողովէ զ285000 սրբոց նշխարս։

P.460 449 Ժողովն Եփեսոսի վասն Փլաբիանոսի։ Մովսէս հայոց պատմագիրն։ Սբն Պարսամ որ 54 ամ ոչ նստաւ.

452 Բարձաւ թագաւորութիւնն Արշակունեաց և քահանայապետութիւն յազգէ սրբոյն Գրիգորի։ Վերափոխումն նշխարաց Ոսկեբերանին։ Յայտնեցան Անանիայքն ի ձեռն Մալխութայ։ Շինէ Անատոլ զԿարնոյ քաղաքն հրամանաւ փոքուն Թէոդոսի։

P.472 Ժողովն Քաղկեդոնի վեց հարիւր երեսուն վեց եպիսկոպոսաց, որք նզովեցին զԵւտիքէս։ Գիւտ գլխոյ Կարապետին յԵմեսիա։ Կատարումն սրբոց Վարդանանց։ Հրայրեցաւ ի Կոստանդնուպօլիս ի ծովէ մինչև ի ծով։ Մին ամիս օդ փոշի տեղեաց թիզ մի. ի բազում տեղիս հուր վայթեցաւ և փաղանման ամպ լուսաւոր երևեցաւ զաւուրս քառասուն։ Սուրբ Դուշանիկ նահատակեցաւ և Անդրէաս զՆունեայ խաչն ի Սպեր տարաւ։ Պարտաւ շինեցաւ ի Վաչէէ արքայէ։

500 Եգիտ Գառնիկ զնշխարս սրբոյն Գրիգորի։ Սուրբն Թաթուլ և Վարոս և Թովմաս։ Պաւլ կաթողիկոս պարսից։ Գիրծն Բարծումից, որ զ7700 եկեղե-

ցականս կատարեաց ։ Վախթանգ վրաց Թագաւորն զՏփխիս շինեաց ։ Սուրբն Սիմէոն սիւնականն ։ Նա Վաչագան գնշխարս արքայն գտանէր, և 365 եկեղեցիս շինէր ։ Սուրբն Դաւիթ Հաղբէշոյ ։ Եղիշէ և Ղազար ժամանակագիրք ։ Նիկոպօլիս և Նիկոմիդիա կործա_ նեցան շարժմամբ ։ Նա սուրբն Եփրեմ ։ Տեառնթագ և Վասակ և Վահան կատարին ։ Յակոբ Սրճեցին արար 700 ճառս ։

Կաւատ 400 կոյս աղջիկ զոհեաց Ոգէ կռոց իւրոց ։ 520 P.530
Հուր անկեալ յԱնտիոք այրեաց զարքունիսն և վեց օր ոչ շիջաւ ։ Գիւտ նշխարաց Թադէոսի առաքելոյն և Սանդրխտոյ կուսին ի ձեռն Կիրակոսի ։ Բարսեղ Ճոնն յաւուրս Ներսեսի շինողի, որ եօթն անգամ ետես զՔրիստոս․ սա սրբագրեաց զշարականս, որ ճոնընտիր կոչեցաւ ։ Մարդամահ սատանի ։ Նոյն եղև ջուրն սեղմեալ յԵրուսաղէմ հնգետասան ամս ։ Հուր երկնային այրեաց զԲալբաք ։ Երևեցաւ ի Կիլիկիա կին մի, որ գիրկ մի երկայն էր քան զամե_ նայն մարդ, անկեր և անխօս, և ի կուզպակին մի փող անըր. եկաց բազում ժամանակս և անյայտ եղև ։
Լցաւ երկհարիւրեակն Անդրէասայ ի մարտի 25 և P.553
յապրիլ 4 չկարացին գնալ, ուր սկիզբն էր, զի ինն լրմանք ի մէջ էին ։ Ապա խափանեցան և իմաստունք ժամանակին կարգեցին զԹուականն Հայոց ։

Սկիզբն Թուականին Հայոց ։ 552

Արդ Մովսէսի կաթողիկոսի հրամանաւն՝ Տա_ P.553 A.1.
րանացին Աթանաս ի Գլակայ վանաց արար զտոմար Հայոց ։ ի պլէ Թվին ասորոց, և ցմձթ Թվին Եբրա_ յեցոց և յէ Թվին Հռոմոց և ի ղլ Թվին Եգիպտա_ ցւոց, և ի ճ Թուին Եթովպացւոց և ի... Թվին արաբացոց.... Թվին մակեդոնացւոց, ի ն Թվին Հայոց, սկսաւ Թուականն տաճկաց ։

Սուրբն Սոփի ի Յուստինիանոսէ հիմնարկի։ Յիզտի-
բուզիտ նահատակն։ Ջրհեղեղն զՈւռհայ տանի։ Ութն
ամ սով և չեթութիւն։ Տէր Ներսէս կաթողիկոս Աշտա-
նից ի Դարբանդայ ի Պարտաւ գայ և գնէ զաթոռն։
A. 10 Եղաւ հինգհարիւրեակն յԱղեքսանդրիա յԱնդայ և
յայլ 36 գիտնաւորաց, (յորում) զոր իւրենն պատա-
ռեալ։ Շարժ ահագին ընդ ամենայն աշխարհ. տա-
րաժամ մահ և կայծակն ի կողմն հիւսիսոյ. վայ զԱն-
A. 14 տիոք։ Աջ աստուածային երևեցաւ ի սուրբ մատրանն
և ի սուրբն Սիոն աստուածածին՝ Յիսուս ի գրկին։
Չար և դառն ժամանակ. հինգ հազար աղջիկ քրիս-
տոնեայք կամաւ անկան յԱթլ գետ, զի առ խաքան
տանէին։ Նենգրացիքն կոտորեցան ի Դարահարէ
հրէէ։ Իշխանք Հայոց ապստամբեալ ի Պարսից՝ ձեռն
ետուն ի Յոյն։ Խաւարեցաւ արեգակն ժը ամիս։ Ի
Գայիոսէ*) մինչև ցյետինն Յուստինոս 50 թագաւորք
A. 30 փռանկք էին, իսկ ի Տիբերէ և այսր թագաւորքն
հոռոմ լինէին։
571 Վարդան Մամիկոնեան սպանանէ զՍուրով պա-
րսիկ իշխան և ինքն գնայ ի Կոստանդնուպօլիս, և
հինգ գրի արծաթոյ գնէ զարեւելեան դուռն սուրբ
Սոփիին։ Գրիգոր և Վրթանէս վարդապետք ի Յոյնս
գնացին. իսկ քաջարքն Մարիք ի Հայս եկին՝ և
երկոքինն ոչինչ օգտեցան։
Սմբատ Բագրատունի գնայ ի Վրկանս, որ է
Սագաստան, և գտանէ հայք մնացեալ գլեզու, և
կարգէ եպիսկոպոս նոցա զԱբէլ։
A. 50 Տիրանուն կաթուղիկոս աղուանից արար լուծմունք
500 դժար բանից։
Սորայ նաւի կաթողիկոս ի Վիրս տանց ա-
տրխարգին Նոտիքու։

*) Բ. ի Գայիոսէ.

Խաւարեցաւ կէս արեգականն 10 ամիս։

Երևի Մահմէտն։ 611 A. 60

Երկոտասան հազար Հրէայք գնան առ նա՝ տանելով զԳիրս ծննդոց։

Կամեցաւ կայսրն Հերակլ կռուել ընդ Մահմետի։ Եկն այր մի առ նա և եբեր նմա զգիրս Հեմինդրոսի և Ջեմինդրոսի*), յորս կայր գրեալ, թէ 240 ամ տուեալ է նոցա իշխանութիւն։

Արճէշ առաւ ի Տաճկաց։

Վիրք ի բաց կացին ի միաբանութենէ Հայոց։ 615 A. 74

Սատրիկ սով և սուր յԱգուանս։

Տէր Վիրոց կաթողիկոս։

Տէր Կոմիտաս մեծացոյց զվկայարան սրբոյն Հռիփսիմեայ։

Տէր Եզր ընդարձակէ զվկայարան սրբոյն Գայիանեայ։ A. 88

Ելք Տաճկաց ի Հայս։

Ժողով Կարնոյ քաղաքի և Եզրայ հաւանիլն։

Սով սաստիկ և հողմն քակիչ ընդ ամենայն երկիր։

Բարձան Թագաւորք Պարսից՝ վերջինն Յազկերտ, 637 A. 100
որք տիրեցին զամս 418. Թագաւորք քսանևչորք։

Տաճիկք առին զաշխարհակալ իշխանութիւն. զԴուին էառ Տաճիկն և 1200**) կոտորեաց ի սուրբ Սարգսին։ Պատերազմ վասն Նկարեալ եկեղեցւոյ, զոր ելոյծ Յովհան Մայրավանեցին։

Շինողն Ներսէս շինէ զառապարի սուրբ Գրիգորն՝ 641
զզարթուցիչն տիեզերաց, որ քակեցաւ ի Տաճկաց։

Երևեցաւ խաչն Վարագայ ի ձեռն Թոդիկայ։ A. 113

Փիլոն Տիրակացի։

Յակոբ Ուռհայեցի արար նոր Թարգմանութիւն։

---

*) P. ի Ջինդոսի.

**) P. 12,000.

Հաւատան Հոնք յԱստուած ի ձեռն Իսրայէլի։

Անանիա վարդապետն արար անշարժ տոմար։

Գրիգոր իշխանն շինէ զԱրուճայ եկեղեցին և տէր Ներսէս զԲագուանայն։

Հողմ սաստիկ ել ի հիւսիսոյ, փլոյց բազում եկեղեցիս և շրջեաց զանտառս։

A.130 Երևեցաւ աստղ մի գիսաւոր՝ նշան սովու և սրոյ և մեծի սասանութեան։

690 Տէր Գրիգորէս Արշարունեաց եպիսկոպոս, արար զընթերցուածոց մեկնիչն. ի խնդրոյ Ներսեհի կամսարականի։

Տաճկունք բարձին զպատկերս ի դահեկանէ և գրով գրոշմեցին։

Արչիլ և Միհր թագաւորք Վրաց հարին զՄըրուանն մերձ յԱնակոփ բերդն. իսկ Եօթնակնեան գետն տարաւ ի տաճկաց 23000 մարդիկ և 35000 ձիս, վասն որոյ Հաբաշիածղալ և ցխէնիսծղալ անին։

A.150 696 — Հայր Սողոմոն արար զտօնականն ի Մաքենիս։

Խալթայ ծովն սառեաւ։ — Զսուրբ Գրիգորի վանքն այրեցին։

Մահմէտ զՍևան էառ։

Աշոտ զԴարօնից սուրբ փրկիչն շինեաց։

A.160 704 Կասմ ամիրայն զհայոց իշխանսն այրեաց՝ ութհարիւր ի Նախջաւան, և չորս հարիւր ի Խրամ։

Աբդլազեզ շինեաց զԴուին. Սուլիման զԴարբանդ քակեաց, և այլ շինեաց։

A.170 Դամոյ Հեշմայ հրամանաւ Հերթն եկեալ ի Հայս աշխարհագիր արար։

Սովն սաստիկ և ընջումն պատկերաց յեկեղեցոյ։

Մահն Աշոտոյ և խաղաղութիւն։

Եզիտ օրէնս եդ՝ ոչ ըմպել Տաճկի գինի։

719 Յովհան Օձնեցի արար ժողով ի Մանազկերտ

և եհան զհոռոմս և զհայսն իւր ՚ի հայոց։ Յով սա֊
տեկ, և Բարան զՄաքենացւոց սուրբ ուխտն այրեաց։

Ջրհեղեղն զՅուհայ տարաւ։

Մարդամահն։

Վայոց Ձորոյ ընկղմումն։

Նզօրութենէ խաչին Քրիստոսի 50 բիւր տաճիկք A 194
ծովասոյզ եղեն ՚ի Կոստանդնուպօլիս, և արձակեցաւ
Մսլիմ ՚ի Լևոնէ պատմել զփառս Քրիստոսի։

Վահան Գողթնացի կատարեցաւ։ 737

Ջափր շինեաց զԲաղդատ քաղաք ՚ի վերայ
Տիգրիս գետոյ։

Շարժն ահագին, որ թաղց զգեօղն ՚ի Թափորա֊ A.200
կան լեառնոտանեն, և բազում քաղաքք և գեօղք
և գաւառք փլան։ Երկու նոր աստղ երևեցան՝ մին
յարևելք և մին յարևմուտք։ Երկու ամիս օդդ փոշի
տեղեաց թիզ մի։ Եղեն ցոլմունք ահագին աստեղաց
և շարժ սաստիկ։

Աբդլլայ զերեք տարւոյ մեռածին հարկն ՚ի կե֊ 758
նդանեաց խնդրէր բռնութեամբ. և հատաւ յամենայն
յաշխարհէ ոսկի և արծաթ։

Մեռեալք ուժ յանկարծակի յարեան և ոչինչ A.210
խօսեցան։

Եկն մարախ բազում և կարկուտ մին հինգ լիտր,
և փլոյց շինուածս բազումս։

Կապիկք կատաղեցան և բազում վնաս արարին։

Երևեցաւ կին մի ՚ի Բուքրայ, որ ՚ի ծնէ կաթն
ոչ եկեր և ոչ այլ ինչ կերակուր։

Ստեփանոս Սիւնեցին. տէր Եփրեմ. Անաստաս, 771 A.220
Խաչիկ և Դաւիթ վարդապետք մեծիմաստք։

ԶՔաղինա, զԹալին և զԱրենի կոտորեցին տա֊
ճիկք և գերեցին. զՄուշեղ, զՍամուէլ և զայլ
ազատագունդս հայոց կոտորեցին ՚ի գառնին։

Ըստ պատերազմացն սաստիկ մոգք և տաճիկք:

A.230 781 Լևոն առաքեաց առ Մահադի զգիրս յանձէսի և յամբէշսի:

ՅՈւռհայ գտաւ տապան մի հրէի և հազար ամաց գիր ի վերայ, թէ «հաւատամ որ Քրիստոս ի կուսէ ծնանելոց է և լոյս նորա ծագէ ի վերայ իմ»: Նոյնպէս և ի Կոստանդնուպօլիս գտաւ տապան մի մարմարեայ և գրեալ ի վերայ — «զինչ օգուտ է ծածկելդ զիս, զի յաւուրս Կոստանդեայ և մօր նորա Հեղինեայ արեգակն տեսանելոց է զիս»:

A.240 Պանդալեոն քահանայ գտաւ զպատմութիւն մասին Պետրոսի առաքելոյ:

791 Սահակ և Յովսէփ ի Կարնոյ քաղաքն կատարեցան: յՅզդամաց ճ̃, ի քնէ պէ, հայ թիւն մխթ:

Մակար կրօնաւորն դարձոյց զամիրայն:

A.250 Խաշնամահն սաստիկ և սով ընդհանուր. մեկ օրն 3000 ոգիք մեռան ի Կարնոյ քաղաքն:

Եկն թշնամին յԱսկի գուռն և առան բազում քաղաքս:

Իբրէհիմ թագաւորեաց ի Բաղդատ:

Ի Խառան գտան բազում կռապաշտք:

Շարժն ահագին, որ լերինքն կողատու յերար հասանէին. փլաւ լեառն մի և արգել զԵփրատ գետ օր մի:

Ապիկուրայ ջանայր զԱշոտ իշխանն քաղկեդոնիկ առնել. իսկ Բուրջէ վարդապետն առաքեաց զԱմսան սարկաւագն իւր, որ յաղթեաց Ապիկուրայ և մեկնեաց զաւետարանն Յովհաննու:

Ապքի ամիրայ *) զվանորայսն հայոց և զամենայն եկեղեցիս կողոպտեաց և ի Բաղդատ յղարկեաց զոսկին և զարծաթն:

*) Բ. Աշէ ամիրայն.

Սմբատ Աբլաբաս. սա է նախնին Թոնդրակեցոց աղանդին։ 821 Ա.270

Յաւուրս տէր Դաւթի փարսման քահանայ կակաղեցի որոշեալ ի հայոց՝ ի Վիրս դարձոյց զԾոնդէացին, այս է Ծադն, որ կան այժմ ի Հոռոմս։

Ծովն Անդրիանու ընկէց արտաքս (զձուկն) քառասուն գիրկ երկայն և նոյնչափ լայն։

Մուտասհլ էառ զԱմուրիա, ուր կայր հազար վանք կուսից, զորս ետ զօրաց խոռոյ։ 831 Ա.280

Մահազի եկն ի հայս Թագաւորեաց. իսկ Սահակ իշխանն հարկանէ զնա և սպանանէ զօրօքն, նաև զզօրավարն տաճիկ Հասան։

Լինի անձրև 40 օր, և վիշապաձուկն մի ելանէ ի Կասբիական ծովէն և ուտէ զամենայն ձկունս Կուր գետոյ։

Դաւութ՝ որդի Մուտասհլայ տաճիկ եդ օրէնս քրիստոնէի ոչ բառնալ զմեռեալս և ոչ խաչ վարել, կամ ժամ հարկանել, և ոչ խոզ պահել։

Աստ Թամամ սուտ ռասուլն, և մարախ ծնծղկի չափ, որ եկն ի Խազրաց։

Նարն և Պապոքն քրիստոնեայ եղեն։ 841 Ա.290

Գուրգէն՝ որդի Զաքարիա Թագաւորի, զնայ ի Բաղդատ հրաշալան յօրինուածովք։

Սպանեցին զԱպուսէթ սպանին։

Երևեցաւ հուր երեք գիշեր։

Եկն անձրև, որ կեղևէր զծառս և բերէր քարինս։

Սաջոր ամիրայն էառ զՄծիթայ և կոտորեաց զխաչն Նունեայ։

Հապուհ արծրունի նահատակի ի Բաղդատ։ 851 Ա.300

Բուղայ կալեալ զամենայն իշխանս և զազատս հայոց՝ սպան, զկէսն մարմնով և զկէսն հոգւով։

Թվ.
տեառն.

854 Զաքարիա կաթողիկոսն ի միում աւուր ընկալաւ զսարկաւագութիւն, զքահանայութիւն, զեպիսկոպոսութիւն և զկաթողիկոսութիւն:

Բարձաւ վարագոյր եկեղեցեաց հոռմի. զի ի կոստանդնուպօլիս Է̃ եպիսկոպոսք նստան կախարդք և կռապաշտք և սուտ պատարագ առնէին:

Շարժ յաղու հացին, որ ի Դուին մեռան ի միում գիշերի երկոտասան հազարք:

Վասիլ կայսրն առաքեաց Աշոտ իշխանին մասն ի տէրունական խաչէն և գիր ի փառս պատրիարգէն:

A.320 871 Յիսէ՛ Շեխայ որդին, ետ ալամ և խաչ ի վերայ Զաքարիա կաթողիկոսին:

Նիկիոն եբեր ի հայս զհռոմայրի սբ̃ նշանն, և զայսահարի զրոյցն, զոր բժշկեաց սուրբն Գրիգոր:

Համամ, որ և Յովհաննէս Բագրատունի, մեկնեաց զԱռակսն և եդ զվերջի զուրղայն ի գլուխ Սաղմոսացն:

A.334 885 Թագաւորեաց ի Հայս Աշոտ Բագրատունի յետ 434 ամաց բառնալոյ թագաւորութեանն Արշակունեաց:

Սա հայր Գագկի, հայր Ահարոն, տէր Մաշտոց, որ 40 ամ հաց ոչ եկեր:

Շապուհ Բագրատունի պատմագիր:

A.350 901 Տէր Յովհաննէս կաթողիկոս պատմագիր:

Բարձաւ իշխանութիւնն տաճկաց և զօրացաւ Թուրքման Սալչուքն: Արք յիսուն իշխանք սասնցիք՝ նեղեալ ի Թուրքաց գնացին ի Կիլիկիա և Սասունով տիրեցին սակաւ սակաւ:

Շարժ սաստիկ ի Թրակիա, որ պատառէր զերկիրն և զբազում եկեղեցիս գլանէր:

Ելանէր Թաթարն ի Գարագումայ. ասեն, թէ սպիտակ շուն առաջնորդէր նոցա և զմոլորեալսն հաչելով դարձուցանէր, մինչև հասին յԱրաղ:

Թագաւորն Սմբատ տիեզերակալ շինեաց զԱնի 913 A.362
քաղաք, որ Թարքմանի խնամ. սա կալաւ զՍուլտանն
և ծամեր ետ առնել Տաճկաց որպէս կանանց: Կալաւ
և զԳեամերն Թագաւորն Վրաց և զբազում Վրացւոց
ձեռն խաղեաց, ուստի և Աշխարհ անուանեցան: Զսա
խաչեաց պիղծն Յուսուփ ի Դուին. և կատարեցաւ
մարգարէութիւն Մովսէսի Խորենացւոյն, որ ասաց.
„Բագրատունիքդ Թագաւորէք ի Դուին“:

Յետ սորա Թագաւորեաց Գագիկ արծրունի, որ
զկղզին Աղթամար քաղաք շինեաց:

Թագաւորեաց Աշոտ երկաթ: 921 A.370

Դաւիթ և Գուրգէն իշխանք կատարեցան ի
Դուին: Աբաս Թագաւոր շինէ զԿարուց կաթուղիկէն A.380
և զԿարմրնջանքն, զկապուտաքարն, զԴպրավանս և
զՀոռոմոսի վանս: Սա եհար զԲերն ի Կարս և
զԹաս զլխոյն յոսկի կալաւ և նովաւ ըմպէր գինի:

Տէր Անանիա կաթողիկոս զՍիւնեաց եպիսկոպոսն
ընդ բանիւ արար և յետոյ արքեպիսկոպոս անուանեաց:

Խոսրով անձևացեաց եպիսկոպոսն արար զմեկնութիւն Աղօթամատոյցին, զոր գրէր Սահակ որդի
իւր:

Շինեցան Հաղպատ և Սանահին ի Խոսրովանոյշ A.417
Թագուհւոյն:

Աստ եղև սկիզբն Թագաւորելոյ Բագրատունեաց 981 A.430
ի վերայ Վրաց, զի Գուրգէն ի Վիրս և Սմբատ
եղբայր նորա ի Հայս Թագաւորեցին: Սա զԱնւոյ
պարիսպն ամրացոյց և զմեծ կաթողիկէն հիմնարկեաց:

Վահրամ իշխանն զՄարմաշէնն շինեաց:

Աստ Աղուանից պատմագիրն Մովսէս Կաղանկատուացի և Գրիգոր Նարեկացի և Ուխտանէս պատմագիր:

Դաւիթ կուրապաղատն էառ զՄանծկերտ և Գաբ-րիէլ որդին Զօպնդարայ եհար զՄամլան Ամա-հունիս։

A.450 1001 Շինի սուրբն Գրիգոր անձամբ ի Անի, որ այժմ հանգուցեալ է։ Շինի և Հաւուց Թառն ի Գեո-րգեայ իշխանէն Քեղույ։

Աստ Ստեփաննոս Ասողիկ պատմագիր և Արիստա-կէս Լաստիվերտացի և Սամուէլ հայրն Կամրջա-ձորոյ զտօնացուցակն յօրինէր և սուրբ հայրն Աամ վարագեցի զՀռոմագիրն կարգաւորէր. իսկ հայրն Սիմէոն արար զԱգամագիրքն հարիւր և մետասան*) ճառ ի խնդրոյ Սենեքերիմայ՝ թագաւորին Վասպու-րականի։

Տիմոթ վարդապետն արար զմեկնութիւն Արա-րածոց։

Կատրամիդէ թագուհին կատարեաց զկաթողիկէն Անոյ։

Սմբատ Մագիստրոսն շինեաց զԱքնայրն։

A.460 1011 Շարժ սաստիկ յառաջաւորին. ընկղմեցաւ Նշ-նկայ ողջոյն, և մնաց միայն տունն Կիրակոսի ողորմա-ծին։ Բազում եկեղեցիք և բերդ.ք տապալեցան։

Հուր անկեալ յԱնտիոք այրեաց զեկեղեցի Ղու-կասու աւետարանչին։

Տուղրիլ Սուլտանի սպասալարն Քրխարի էառ ի Հալպայ և ի Գամշխայ մինչ ի Քաղկեդոն և ի Տրապիզոն։

Իսկ Խոսրով՝ թագաւոր պարսից, զարմացոյց զաշ-խարհս իմաստութեամբ իւրով. — սա քրիստոնեայ էր և տօնաւէր էր, եւ թագաւոր ի Հայս և հնազանդեաց զՎիրս։

*) P. 151.

Ի Տրապիզոն յաւուր Յայտնութեան հանդիպեցաւ տէր Պետրոս կաթողիկոսն։ Սա շինեաց զՍուրմարի և զՇատաւաքար։

Վկեան Սարգիս՝ շինող բերդից և վանորէից։

Ի հոկտեմբերի երեքն յերեկորեայ երկինք պատառեցաւ յեզրէ յեզր և անդունդք դոչեցին, և արձակեցաւ սատանայ ի կապանաց մկրտութեան Քրիստոսի։ A. 477

Արեգակն խաւարեցաւ ի քաղոցի 13 յուրբաթու ի միջօրէի և արձակեցաւ սատանայ ի կապանաց խաչելութեան Քրիստոսի։ 1031 A. 480

Այրիստ իշխան երկոտասան հազար հեծելի... *)
Սա շինեաց զԿեչառուս և եհան զաւուն Երևանայ։

Զկալափի կայսրն կուրացոյց կինն Միխայէլ, և ի տեղն դոին քար մի և ի վերայ գրեալ, — «Թէ սա Թագաւորն խաւարի»։

Սուլտան Թագաւորեաց ի վերայ Հայոց և Հոռոմոց և զաւուրբն Պետրոս յԱնտիոք մզկիթ արար. և այս եղև սկիզբն իշխանութեան տանն Դանիշմանայ ի Կապադովկիա։ 1041 A. 490

Մոնոմախն եբարձ զթագաւորութիւնն Բագրատունեաց որք 10 թագաւորք կալան զամս 160։ Այնպէս եհան յաշխարհէս մերմէ զկաթուղիկոսն տէր Պետրոս և նստոյց ի Սեբաստիա, և անտի և այսր ոչ եկն առ մեզ կաթողիկոս։ Իսկ ի զարմէ Բագրատունեաց մնացին ի Վիրս և ի Մածնաբերդ և ի Նոր բերդ, որք կալան զբազում գաւառս և շինեցին բերդս բազումս։ Իսկ Մոնոմախն, որ կալաւ զԳագիկ Թագաւորն՝ ետ զիշխանութիւն երկրիս Գրիգորոյ Մագիստրոսի, որ շինեաց զեկեղեցին Կեչառուաց։ Սա 1045 A. 493

*) Պակասէն երեք էջ.

է որդին Հոլում Վասակայ՝ շինողին Բջնոյ, Կայենոյ և Կայծոնոյ, զոր յանդէտս սպանին ի Մերկելէ։

Ըստ աւերելոյն Կիւլիկիոյ Ռուբինեանքն. դատ արար Աստուած զրկելոցս. զի Հոռոմ եբարձ զմեր թագաւորութիւնն, իսկ Աստուած զերկիր նոցա ետ Հայոց. որք և այժմ թագաւորեն ի նմա։

A. 500 1051 Յովհաննէս վարդապետ Տարօնեցի արար Պատմութիւն Բագրատունեաց հրամանաւ տէր Պետրոսի։

Բագարատ թագաւոր Վրաց էառ զՏփխիս ի Ջաւրայ օգնականութեամբ Գագկայ թագաւորին Կախեթոյ՝ որդոյ Յովհաննէս թագաւորին։

A. 510 1061 Բռնակալն Ալփ արմնի սալանն ի Կարնոյ քաղաք՝ որ ի ծագել արեգականն մարդ սպանանէր և ի մտանել արևու ընդ կուսի ննջէր։

Հոնք զՊանձակայ դաշտն կոտորեցին և Ալփ Ասլանն զԱնի գերեաց և կոտորեաց։ Սուրբ հայրն Վարդիկ եկն ի Սպերոյ առ Գագիկ թագաւորն Վանանդայ և շինեաց զՎանկս և ետես զՔրիստոս ի կերպս ցաւալից աղքատի։ Այս Գագիկ զԿարս ի Հոռոմն ետ և էառ զԾամնդաւ և անդ կաթողիկոս

A. 520 1071 ձեռնադրեաց զՎկայասէրն։

Օ. Օ. Ոնչէլ իշխանին զաչքն հանին Տաճիկք յԵրուսաղէմ և նա տարեալ զաչս ի Հռոմ եցոյց թագաւորացն։ Նա ժողովեալ եօթն կոմսունք եկին և հարին զՏաճիկն և թագաւորեցին Երուսաղէմի Սամուէն, Պայմունն և Կոնտափրի և Տանկրի զամս 200 մինչև ի Սալահատին։

A. 530 1081 Մէրաքանեան թուրքն և Տաճիկն և զազգապետն իւրեանց եղին ի Բաղդատ և խալիֆայ անուանեցին, այսինքն է՝ յետնանոյ Մահմետի։

Կոնտափրի իշխանն 30 ձիաւորօք եկն ի Հռոմէ յԵրուսաղէմ և զգեցաւ զգեստ կրօնաւորութեան, և

ամն.
պետրոն.

յետոյ հարկեալ ՚ի պատրիարգէն Երուսաղէմի՝ զգեցաւ զրահ և կռուէր ընդ անօրէնս։ Եւ այս եղև սկիզբն օրբաղան ազգին ֆրերայ, որ ատին էշէպ։

Իշխանքն Հայոց զօրացան ՚ի Կիլիկիա և առին զՍաւատանէքն և զՄարաշ և զԲէհէսնի։

Գող Վասիլն էառ զՔեսոն և զՌաբան։

Թագաւորն Հայոց Կիւրիկէ Վրաց թագաւորն Դէ-մետրէ և կաթողիկոսն Հայոց տէր Բարսեղ գնացին առ Մելիք Շահ սուլտանն և դարձան պատուով։

Դաւիթ թագաւորն՝ որդին Կիւրիկէի շինեաց զԼօռի և զայլ երկոտասան բերդս։ Իսկ Կիւրիկէ՝ որդին Դաւթի ետ ձեռնադրել Յովսէփայ Աղուանից կաթողիկոսին զտէր Բարսեղն և զգլան երէցն իւր՝ զՍարգիս ետ ձեռնադրել եպիսկոպոս Հաղբատայ, և յանձնեալ եղև աթոռ։ Իսկ Բջնոյ աթոռն ՚ի տէր Պետրոսէ եղաւ յառաջ։

Սկիզբն նոր թուականին որ կարգեցաւ ՚ի Յով-հաննէս վարդապետէ Հաղբատացւոյ որ Սարկաւագ 1085 A. 534
կոչեցաւ։ Սա արար անշարժ տոմար ըստ այլոց ազգաց *)։ Եղև պատերազմ Թաչնոց յերկիրն Ամթայ, կռունկք և արագիլք ե ե դեսպանք առաքէին, և յետոյ կռունկք յաղթեցան արագիլքն։ Թագաւորն Պիծէն-կաց 600 հազարաւ եկն ՚ի վերայ Աղէքսին. իսկ քրի-ստոնեայքն 8 օր աղօթեալ կոտորեցին զնոսա։

Սուքման ամիրայն՝ Կարուց եպիսկոպոսին ուրանալ

*) Բ. [illegible] ՚ի Քաղոց 28՝ յայտնութիւն է, Մեհեկի 8՝ [illegible] [illegible] Արեգի 12՝ [illegible], 30՝ [illegible]. Ահեկի 7՝ [illegible] Մարերի 17՝ [illegible]. Մարգաց 18՝ [illegible]. Նաւասարդի 7՝ [illegible]. Հոռի 5՝ [illegible], 9՝ [illegible]. Սահմի 9՝ [illegible] [illegible]. 10՝ [illegible]. Քաղոց 10՝ [illegible]. 21՝ յայտնութեան [illegible]։

եա, զի անչափ ոսկի խնդրէր։ Սա աղքատացոյց զաշխարհս հայոց անչափ հարկիւ։

Սկիզբն շրջանի հինգհարիւրեկին։ Սով սաստիկ
A. 544 1094 և հարկապահանջութիւն ի Հայս։

Փաւստոս ամիրայն առաքեաց զՎասակ Պահլաւունին՝ զորդի Գրիգորի Մագիստրոսի բազում զօրօք ի վերայ Բաղաբերդոյ, որք խարէութեամբ սպանին զՍենեքարիմ արքայն հայկազն և առին զերկիրն Սիւնեաց։ Եւ այն եղև սկիզբն տիրելոյ Տաճկաց ի վերայ նոցա։

Փռանկք անհամարք դիմեցին յարևելս օգնել քրիստոնէից. իսկ անաստուած Ալէքսն բազումս նենգեաց նոցա։

Տասն ազգք ծուռ զատիկ արարին վասն պատառմանն իրիոնի։

Երևեցաւ աստղ նիզակաձև ի բազում աւուրս։

A. 550 1101 Վասիլն և այլ իշխանք Կիւլիկիոյ տարան աղաչանօք առ ինքեանս զտէր Գրիգոր կաթողիկոսն։

Յաւուր ծրագալուցին ոչ վառեցաւ լոյսն յԵրուսաղէմ, զի Փռանկն զպատաւորութիւնն կանոնաց էր տուեալ։

Խզիլն էառ զԼօռի, և զՀաղբատ և զՍանահին այրեաց։

Թորոսն էառ զԱմուդայն և սկսաւ զօրանալ։

Շարժ եկն ի Խորասան, զմզկիթն և զ60,000 մարդ և կին ի վայր տարաւ։

Աստ Մարկոս ճգնաւորն ի լերինն Կոնկոնաա 65 ամ հաց ոչ եկեր։ Սա ասաց՝ թէ յաճախեն չարիք մարդկան ի վերայ երկրի՝ աւերին և փակին դրունք եկեղեցեաց և Երուսաղէմ դարձեալ առնու Թուրքն որ և եղեն իսկ։ Հոռոմ աբեղայ միջնապաշտ մոլորեցոյց բիւրսի մարդ։

Զմեռն ի մթին գիշերի որոտաց սաստիկ և 1111 A. 560
անկաւ հուր ի ծովն Խլաթայ, և մեռան ամենայն ձկունք և ծովն անկաւ ցցամաքաւ և դարձաւ յարիւն։

Սպանաւ Խըղիլն և մեռաւ Մանուչէ ամիրայն Անւոյ։

Մերժեցան ի հայրենեաց որդիքն Կիւրիկի թագաւորի։

Մեռաւ Սարկաւագ վարդապետն և Գէորգ վարդապետն Մեղրիկ, որ զԳիրագարկին կարգն սահմանեաց. և Դաւիթ վարդապետն Ալաւկայ որդին, որ զկանոնքն բացայայտեաց։

Ամբոխեցաւ թագաւորութիւնն Թուրքաց ի Խորասան և դարձեալ զօրացան Տաճիկք։

Յամառն կարմիր ձիւն երեկ չորս մատն։

Անձրև եկն ի Պաղեստինէ և ի նմա կաթիլք արեան, և ցօղ առաւօտուն արիւն լինէր։

Դաւիթ թագաւորն Վրաց եհար զՉըղղաղի և զՄէ- 1121 A. 570
լիքն և էառ զԳագ, զՏէրունական և զԱնի քաղաք։

Սուլթանքն Խորասանայ Անձէէկ կոչեցան յՉըւ-ակուզէն ի հեռ։

Արղլմուշիք յԱլիի ազգէն են, որք գնային փախստական ի խալիփայ եղբօրէն իւրեանց. անուանք նոցա՝ Արղլլայ և Մամունայ. տարան երկու գիրք զՄեմիայն և զՔեմիայն, և ոըլըամով և ոսկով թագաւորեցին յարևմուտս։

Ապլսուար եբեր ի Խլաթայ զոսկի նալն և եդ ի գլուխ կաթուղիկէին Անւոյ։ Իսկ քաղաքացիքն բերին զԴաւիթ թագաւորն Վրաց և բացին նմա զդուռն քաղաքին. և նա կալեալ զԱպլսուար ի Սանէթ առաքեաց որդովն, և զնալն ձգեաց յեկեղեցւոյն և խաչ կանգնեաց։

1131 Գայ Փալտուն՝ որդի Աբլսուարայ և դարձեալ առնու զԱնի։

Սով սաստիկ և սուր անողորմ։

580 Մասուտ՝ սուլտան Իկոնացւոց եմուտ ի Կիլիկիա և եհար զնա Աստուած մժղուկաւ։

Պէմունդ արքայ Անդաքու բրինձ կոչեցաւ։

Դեմետրէ թագաւորն եհար զՂարասընթուր աթաբէկն ի Նոր բերդին։

ԶԴմանիս և զԽունան էառ Ապուլէթ։

Ասա Պետրոս՝ Խանդկայ որդին, և Յակոբ սքանչելին, իսկ Խորասու և Մարիամ ի Քարայրին կային կուսութեամբ։

Շահրիմանն էառ զԽլաթ։ Մանիլն զԽլիճ ասլանն ծածկեաց ոսկով։

Ընդ երկուս բաժանեցան կրօնիւք Տաճկունք՝ Շէիք և Սունիք։

Եհար Պաղտոյն թագաւորն Երուսաղէմի զԱբաս խալիփայն Մսրայ և էառ զամենայն գանձս տանն Ալիայ։

Շերագաւ երարձ զխալիփայութիւնն յԵգիպտոսէ։

Ա. 590 1141 Շարժի Գանձակ սաստիկ։

Չալչատարն առնու զամուրսն Խաչենոյ խարէութեամբ։

Սալահադինն գունացի տիրեաց յԵգիպտոս և աւրինադրեաց միշտ զաւանկայ լինել քրիստոնէից։

Աստղ գաւազանաձև երևեցաւ տասն աւր։

1151 Դարձեալ փռանկք բիւրք բիւրոց եկին ընդ Թիւրակս յաղթութիւն Քրիստոնէից. իսկ Մանուէլ թագաւորն նենգեաց նոցա որպէս Ալէքսն՝ և ոչ յաջողեցան։

Տէր Գրիգորիս առնու զՀռոմկլայն և դնէ անդ զաթոռ իւր։

Իլտկուզ աթաբակն էառ զԱմուկ ի Խալտենկայ և զՍասունք ի Վիրգենայ։

Յակոբ՝ որդին Սալիպայ, մեկնեաց զամենայն Հին և Նոր կտակարանս։

Կալաւ Դեմետրէ զՍալթուխն ի դրանն Անոյ. իսկ Դաւիթ՝ որդին Դեմետրէի եհար զՄէլիք սուլտանն և էառ զՏփխիս։

Թագաւորն Գէորգի էառ զԴուին։ 1161 A. 610

Շարմն տարաւ զԱշղնկայ։

Տէր Ներսէս կաթողիկոսն փայլեաց յաշխարհի 913 A. 362 ամենայն առաքինութեամբ և գիտութեամբ։

Ի սուրբ խաչին քառասնհինգ թիզ ձիւն եկեալ և ի Հնդիկս 14 թիզ. և մեռան ձկունք և թռչունք և ամենայն ազգք կենդանեաց։

Մուստին խալիփայն հրաման ետ ընդ ամենայն երկիր եկեղեցիս շինել։

Սալահատինն էառ զԵրուսաղէմ։ 1181

Գէորգի թագաւորն եբարձ զգօղս և զաւազակս։

Տէր Գրիգոր զՀռոմկլայի եկեղեցին շինեաց։

Ներսէս Լամբրոնացի՝ անյաղթ վարդապետ և թարգմանիչ գրոց։

Յորդանան տաճիկ նահատակեալ ի Կարնոյ քաղաքի։

ԶՍարգիս խաչենեցի խաչեցին ի Գանձակ։

Թամար թագուհին մեծացոյց զԶաքարիա և զՅովհաննէս, որ և Իւանէ։

Ստեփաննոս վարդապետ ի Կարմիր վանքն։

Իգնատիոս վարդապետ, որ զՂուկասու աւետարանն մեկնեաց ի Շափիրին։

Սարգիս վարդապետ, որ զկաթուղիկէսն մեկնեաց ի Քարաշիթու։

Յուսկայ որդին, և Աստուածատուր քահանայ՝ Եղբա-յրկանն որդի, որ յորդյ զապանեալն։

Գփչախն եհար զԼաշայն ի Գանձակ։ 1221 Δ. 670

Փոխեցաւ ի Քրիստոս Վասակ՝ իշխանաց իշխանն և էառ զդրօշայն որդի նորա քաջն Պռօշ։

Ջալալադին սուլտանն Խորասանայ զայ փախստա-կան ի Թաթարէն և հարու զԼաշայն և զԻւանէ ի Կոտայսն՝ անձաւաձոս առնելով ի ձորն Գառնոյ։

Մառնէ Պռօշն ի Դուին և կոտորէ զԽորազմն և զՏաճիկն։

Զանկզ ղանն սպանանէ զԱլթան ղանն և ինքն տիրէ ուլուսին և զնէ որդու ի Գխաթ։

Խորազմն էառ զԽլաթ և զբազում աշխարհս։

Ռուսուդանն Թագաւորէ Վրաց, իսկ Հաւքօթա-ղանն բաժանէ զզօրս իւր յերիս առաջս ի հարաւ, ի հիւսիս և ի մէջոյ աշխարհիս անհուն բազմու-թեամբ։ Հարաւայինն էառ զամենայն Հնդիկս և զծովեզերայս մինչև ի ձկնակերն Եթովպիա. հիւ-սիսայինն զնայ զվերին կողմամբքն Կապբիական ծո-վուն՝ կոխելով զբազում աշխարհս անցանէ ընդ Դա-նուբ գետ, զայ ընդ առաջ նորա կայսրն Ալամանաց և յետս նահանջէ զնա. իսկ միջին զօրքն հարկանեն ի սուր սուսերի իւրեանց զՊարթևս և զՎրկանս, զՔուշանս և զԵլեմացիս, որ այժմ ասին Մլհուաք, զԽորա-սան, զՊարս, զՄարս, զԱսպահան և զԱտրպատա-կան և կարգաւ կոխելով զան ի Հայս, ի Վիրս և յԱղուանս. և ի միում ամի, ի ՈՁԵ (1236) Թուին՝ առին առհասարակ և կոտորեցին զաշխարհս, զերդս և զքաղաքս։ Իսկ Թագաւ Վրաց և իշխանք աշխարհիս փախստական լինին։ Եւ յետոյ իջանէ Աւագն ի կայենոյ և երթայ առ Չարմաղանն և առնէ խաղաղութիւն։ Իսկ ի տեսանել նոյա զա- 1231

շխարհս Հայոց և Աղուանից՝ հանեցան ինքեանց տեղի հանգստեան, զամառնային եղանակն տարածանելով ՚ի վերայ լերանցս Հայոց և զձմեռն ածելով յամենունակ և յինքնաբոյս դաշտն Ռանայ, որ ասի Մուղան:

A. 690 1241 Եհար թաթարն զՀոռոմոց սուլտանն Ասուչման և եառ մինչ ՚ի Կեսարիա և յետոյ մինչ յԱնտալիա և աւերեաց զՍամսիկ: Թէոդոլն և Ձեկանն զանասունս աշխարհիս կրկին աւար առին:

Յովսէփ վարդապետն շինեաց զգերեզման Թադէոսի առաքելոյն: ՚Ի Գողթն դև մի ՚ի կերպս կնոջ կին եղև առն միում զբաղում աւուրս:

՚Ի տանի խաչին*) ձկնէ կարկուտ երեկ:

Գաւիթ Իծար առաքանոց:

A. 700 1251 Մանկու ղանն տիեզերակալեաց. գնաց առ նա Հեթում՝ արքայն Հայոց և գունդստաբլ Սմբատ՝ եղբայր իւր, և պատուեցան ՚ի նմանէ:

Աշխն մարախ և սակաւ վնասեաց:

Արղունն աշխարհագիր արար յարևելից մինչև յարևմուտս:

Շարժմամբ կործանեցաւ Եզնկայն:

Հուլաւու ղանն եկն յաշխարհս. եառ զԲաղդատ քաղաք:

Մեռաւ Բաթոյ՝ ղանն հիւսիսոյ, և նորա Սարթախն քրիստոնեայ:

Փախեան երկոքին Գաւիթ թագաւորքն Վրաց ՚ի Սոնէթ. իսկ զիշխանս և զազատորդիս զամենեսին պատանդ տարան յորդուն և [illegible] անուանեցին: Քակեցին զամենայն բերդս և զամենայն ամուր եկեղեցիս զՀայոց, զՎրաց և զԱղուանից ՚ի ձեռն

---

*) Բ. ՚ի Խաչէն:

Խոճազիզ տաճկին. առին կրկին զՄուփարղին, նաև
զԱլամուդ և զամենայն միջերկրեայս մինչև յԵրու-
սաղէմ:

Արղունն զՎրացտունն աւերեաց. զԳալըն և 1261 Ա. 710
զՕաքարէն սպանին:

Փնդուխտար սուլտանն Եգիպտոսի եհար զկոմ-
նայս թաթարին զԲիթբուղայն ՚ի Յորդանան:

Հուլաւուն կոտորեաց զամենայն ջաթանս, որք
են զանորդիս:

Երևեցաւ աստղ մի նիզակաձև զամիսս չորս: Մս-
րցին եհար զզօրս Հայոց, սպան զԹորոս և գերեաց
զԼևոն՝ զորդիսն Հեթում թագաւորին, զոր յետոյ
թափեցին:

Իսա և աւերեաց Մսրցին զԱնտիոք Ասորոց:

Ղանութեան Ապաղային և ՚ի կաթողիկոսութեան
տեառն Յակոբայ արարին ժողով ՚ի Հաղբատ և ՚ի
Զագավանս:

՚Ի Խորասան օձէ կարկուտ երեկ երկու օր. երկրորդ
աւուրն զառաջին աւուրն կերաւ:

Պակութարն փախեաւ ՚ի Սոնէթ:

՚Ի Կիւլիկիա շարժ մեծ եղև: Նուշաւուր և Թա-
վրէզ կործանեցան:

Արղունն կրկին համարեաց զաշխարհս:

Շարժ եկն ՚ի Վրացտուն և բազում վնաս արար:

Մսրցին կրկին մտաւ ՚ի Կիւլիկիա:

Շարժ եկն ՚ի Խլաթ և յամենայն սահմանս նորա:

Մանկու Թամուրն և Ալփի եգիպտացին հարին 1281 Ա. 730
զիրար ՚ի Համս:

Փոխեցան ՚ի Քրիստոս աշխարհաշէն իշխանքն
Պռօշ հայկազն և Սադուն Արծրունի:

Արղունն սպան զԱհմատն և ինքն զան նստաւ։
Տէր Կոմիտաս*) կաթողիկոս։
Կոտորեաց Արղունն զՉալալոյքն և զայլ բազում նուինայս յաղագս ապստամբութեան, ընդ որս և զանմեղ թագաւորն Վրաց զԴեմետրէ սպանին։
A. 738 1289 Մեռաւ թագաւորն Հայոց Լևոն և նստաւ Հեթում։
Եղև սաստիկ հացաթանկութիւն մարդոյ և անասնոյ։

Յովհաննէս աւետարանիչն հրամայէ վասն երեքամեան և երեքամսեան գործոց և սքանչելեացն Քրիստոսի, որ թէ զամենայն գրեալ էր՝ կարծեմ թէ և ոչ աշխարհս բաւական էր տանել։ Իսկ թէ այս այսպէս է՝ որպէս և է իսկ, ապա զի՞նչ պարտ է ասել վասն 'ի սկզբանէ աշխարհի անցելոց, եթէ գրեալ էին։ Իսկ մեք քայլելով 'ի վերայ ժամանակագրաց անհուն զրուցաց՝ քաղելով զմի 'ի հազարաց և զերկուս 'ի բիւրուց, ըստ կարի հասու արարաք զձեզ՝ որբազան հարք և եղբարք, կարգի թուոյ ժամանակաց, իսկ դուք աննախանձ մտօք ընկալարուք զաշխատս 'ի մէնջ՝ որպէս Եղիայ 'ի Սարեփթացւոյն. զի և այս ոչ 'ի մէնջ իրակերտեցաւ, այլ 'ի Հոգւոյն սրբոյ հրաշագործեցաւ, որում երկիրպագանեմք, և փառաւորեմք զանսկիզբն էութիւն և զմիանական աստուածութիւնն Հօր անծնին և Որդւոյն ծնեցելոյ և Հոգւոյն բղխեցելոյ, անբաւ անպատում մեծվայելչութեանն և արարչական զօրութեանն գոհութիւն և բարեբանութիւն յամենայն արարածոց նորա և յընդհանուր շնչոց և յանշնչոց՝ յերկնաւորաց և յերկրաւորաց 'ի սանդարամետականաց, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

*) Բ. Կոստանդին.